



## Աղջիկն ու թիթեռ

Ունեմ կապույտ շոր,
կապույտ ժապավեն,
փոքրիկ թիթեռը
գիտի՝ ծաղիկ եմ:
Նա էլ իր հագին
կապույտ շոր ունի,
գալիս է, որ իմ...
թերթերին իջնի:
— Ես գնում եմ տուն,
ա՜յ փոքրիկ թիթեռ,
արդեն շատ ուշ է,
տո՛ւն գնա դու էլ:—
Բայց նա գալիս է
գետակը անցած,
ինձ հետ իջնում է
նա բլրակով ցած:
Ունեմ կապույտ շոր,
կապույտ ժապավեն,
փոքրիկ թիթեռը
գիտի՝ ծաղիկ եմ:

# Ստեղծագործում

## ՊԵՏՔ ՉԷ ՆՐԱՆՑ ՎՐԱ ԾԻԾԱՂԵԼ

Երբ տղաները սիրահարվում են,
Աքլորանում ու կռիվ են սարքում
Եվ ականջները են լվանում հաճախ,
Եվ հագնվում են կոկիկ ու մաքուր:

Երբ տղաները սիրահարվում են,
Ինչքա՜ն սաստիկ են շփոթվում նրանք
Եվ ծաղիկներ են վախով նվիրում,
Բանաստեղծություն գրում շարունակ:

Աղջիկնե՛ր, եկեք մենք լինենք բարի,
Պետք չէ, որ նրանց վրա ծիծաղենք.
Ինչո՞ւ չվերցնենք այդ ծաղիկները
Ու ժպտանք նրանց և ոչ թե ծաղրենք:

Զիլ ծիծաղելով, համարձակորեն
«Շնորհակալ եմ» ասացի լուրջ-լուրջ,
Շարժելով նախանձը չար աղջիկների՝
Քայլում եմ՝ ձեռքիս սիրուն ծաղկեփունջ:

ՅՈՒԼՅԱ ԿՈՐՈԼԿՈՎԱ
ք. Պետրոզավոդսկ, 7-րդ դաս.

## ԲՈԼՈՐԻՑ ԼԱՎ ՄԱՅՐԻԿԸ

Մայրիկները շա՜տ տարբեր են լինում.
Լինում է ուրախ կամ էլ տխուր մայր,
Կա՝ ցածրահասակ, կա՝ բարձրահասակ,
Ռուս և կամ՝ հայ...

Մայրիկները շա՜տ տարբեր են լինում,
Բայց ամեն մեկիս համար աշխարհում
Ամենից լավը իր մայրն է, որ կա,
Բոլորից բարի, բոլորից սիրուն:

Թեև սա ճիշտ է, բայց և լավ գիտեմ,
Իմ մայրիկի պես էլ մայրիկ չկա.
Ինչքան էլ փնտրե՜ք, ինչքան էլ փնտրե՜ք,
Ամենալավ մայրն իմ մայրն է, որ կա:

ԼԵՆԱ ԿՈԼՄԱՆՈՎՍԿԱՅԱ
ք. Մոսկվա, 3-րդ դաս.

Թարգմ. ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆԻ



# են աշխարհի երեխաները

## ՉՄԵՌԱՅԻՆ ՔՈՒՆ

Ամպերից վեր
Լեռներն են մեր
Մտել երկնի ծովի մեջ,
Ջուգվել սիրուն առվակներով,
Գոտիներով իրենց պերճ:
Հպարտ-հպարտ
Գագաթներին
Պաղ ամպեր են օրորվում,
Խորունկ քնած առվակներն ու
Ժայռերը չեն երևում:

ԳՈՀԱՐԻԿ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ
*Երևանի № 74 դպր., 7-րդ դաս.*

## ԵՐԱԶԱՆՔԻ ՁԻՆ

Տղան հանգցրեց լույսն ու քիչ հետո թեքևացած հոգոց լսվեց: Արդեն անկողնում է: Տատի կարած տա՜ք, արքայական վերմակի տակ: Հիմա արդեն օրվա ամենահաճելի մասն է՝ գիշերը: Փակում է աչքերը ու տարվում երազանքներով...

Նա հյուսում էր ձիու մազերը: Ձին սև էր (իր սիրած գույնը), հյուսեց, վերջացրեց, և ստացվեց յոթ հյուս (իր սիրած թիվը), համբուրեց ձիու խելոք գլուխը, նայեց աչքերի մեջ, այնտեղ արցունքներ կային... Ծուռ եկավ, եկեղեցու բակում էին կանգնած: Հին, դեղնած երեք խաչքար կար, երեք ժանգոտած զանգ, որ դարեր շարունակ համառորեն լռում էին և խունացած, մի փոքր ծռված եկեղեցու խաչ... Ծուռ եկավ դեպի ձին: Նա կանգնել էր հպարտ, գլուխը բարձր ու հանկարծ գիլ խրխնջաց: Մարտակոչ էր դա... Նետվեց ձիու մեջքին ու սլացան: Քամու արագությամբ գնում էին պապերի ծննդավայրը...

Առավոտյան, երբ արթնացավ, հայրը դիմավորեց նրան ժպիտով:

— Երգում էիր,— ասաց,— ամբողջ գիշեր երգում էիր, երգում էիր մի երգ առանց բառերի, դու, հավանաբար, մի գաղտնիք ունես...

— Ունեմ...

Հետո վեր կացավ, թղթի վրա յոթ հյուսերով մի ձի նկարեց, նկարեց եկեղեցին ու ցույց տվեց հորը: Հայրը երկար նայեց աչքերին ու հետո ասաց.

— Միասին կգնանք...

ՄՀԵՐ ԴԱՎԹՅԱՆ
*Երևանի Ե. Չարենցի անվ. դպր., 7-րդ դաս.*


ԿԱՆԻԵԼՅԱ ԴԱՎԻԴ ԷՌՆԵՍՏՕ, 11 տ., Կուբա


ԱՍՅԱ ՆԵՄՔՑՈՆՈԿ, 7 տ., ՍՍՀՄ


ՌՈՒԹ ՇՐԵԴԵՐ, 9 տ., ԳԴՀ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 16. ԽՈՐԻՆ ՀԱՐԳԱՆՔ ԳՐԱԲԱՐԻ ՀԱՆԴԵՊ

«Ճանաչել գիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ...»

Սրանք են այն առաջին բառերը, որ գրվել են հայոց լեզվով, մեսրոպատառ հայերենով: Գրվել են գրաբար: Ժամանակակից հայերենով դա կհնչի այսպես՝ «ճանաչել իմաստությունն ու խրատը, իմանալ հանճարի խոսքերը...» Մատենադարանի առջև Մեսրոպ Մաշտոցը կարծես հենց այս հորդորն է կարդում ծնրադիր պատանուն:

Այս խոսքն առնված է «Աստվածաշնչից», այն առաջին գրքից, որ թարգմանվել է հայերեն, V դարում: Թարգմանվել է, իհարկե, գրաբար:

Այդ ժամանակից ի վեր մինչև XIX դարը գրաբարը (կամ՝ հին հայերենը) մեր գրական լեզուն է եղել, «գրաբար» բառն էլ նշանակում է՝ գրի լեզու: Այդ ընթացքում, ավելի քան 1400 տարի, անթիվ-անհամար գրքեր են գրվել ու թարգմանվել գրաբար: Դրանցից շատերն անհետ կորել են մեր ժողովրդի գլխով անցած բազում աղետների ժամանակ, բայց շատերն էլ, անցնելով հրի ու սրի միջով, հասել են մինչև մեր օրերը և որպես ազգային մեծագին հարստություն աչքի լույսի պես պահվում-պահպանվում են Մեսրոպ Մաշտոցի անունը կրող Մատենադարանում: Թե ինչպե՞ս, դուք կիմանաք Մատենադարանում, եթե միայն մինչև օրս չեք եղել այնտեղ:

Լա՛վ, գրաբարը տիրապետող գրական լեզու է եղել մինչև XIX դարը: Իսկ ի՞նչ կատարվեց դարերով մշակված, նրխացած այդ լեզվի հետ: Դուք գիտե՞ք ի՛նչ զո-բավոր երևույթ է ժամանակը, անողոք և անզիջում: Ամեն ինչ ենթարկվում է ժամանակի անխուսափելի ազդեցությանը, լեզուն՝ նույնպես: Ժամանակի ընթացքում խզում է առաջանում գրական լեզվի և կենդանի խոսակցական լեզվի միջև: Խզումը դառնում է ճեղքվածք, ճեղքվածքը՝ վիհ: Եվ մեկ էլ հայտնի է դառնում, որ գրական լեզուն մնացել է ուսյալ մարդկանց սեփականությունը, իսկ ժողովուրդը խոսում է ուրիշ լեզվով: Այդպես է եղել դարերի խորքից եկող ժողովուրդների հին լեզուների հետ:

Գրաբարի և խոսակցական լեզվի տարբերությունները աստիճանաբար խորանալով հանգեցրին այն իրողությանը, որ X դարից ի վեր սկսեց կիրառության մեջ մտնել միջին հայերենը, որով և ստեղծվել է գեղարվեստական, գիտական ու պատմական մեծահարուստ գրականություն (Ներսես Շնորհալի, Ֆրիկ, Վարդան Այգեկցի, Մխիթար Հերացի և ուրիշներ): XIX դարի առաջին կեսից ծայր առավ գրապայքարը գրաբարի կողմնակիցների և աշխարհաբարի կողմնակիցների միջև: Եվ որքան էլ մեծ էին ու անհերքելի գրաբարի արժանիքները՝ կուռ քերականություն, ամենաբարդ մտքեր արտահայտելու ճկունություն, ճոխ բառապաշար,— հաղթանակը մնաց անհամեմատ թերի ու անմշակ աշխարհաբարին, որովհետև ժողովուրդն այդ լեզվով էր խոսում: Ի՞նչ օգուտ ճոխ ու գեղեցիկ լեզվով գրելուց, եթե դա անմատչելի էր ժողովրդին: Հաղթանակը մնաց այն դիրքորոշմանը, որի պաշտպաններն էին Խաչատուր Աբովյանը, Միքայել Նալբանդյանը, արևմտահայ իրականության մեջ՝ Արսեն Այտնյանը և ուրիշներ:

Իսկ ի՞նչ եղավ գրաբարը:

Գրաբարը մեռավ, իր ուժն ու զորությունը տալով աշխարհաբարին: Կա բիբլիական խորունկ մի իմաստություն՝ եթե ցորենի հատիկը հողի մեջ չի մեռնում՝ կորչում է անհետ, իսկ երբ մեռնում է՝ հողի երես է ելնում մի նոր ոսկեհասկ:

Այսպես է մեռել գրաբարը, այդպես են մեռել լատիներենը, հին հունարենը և ուրիշ սքանչելիորեն ճոխ լեզուներ:

Ճիշտն ասած, ինչքան էլ մեռած, այդ լեզուները մինչև օրս էլ անգնահատելի ծառայություն են մատուցում ժամանակակից կենդանի լեզուներին: Դուրս է գալիս, որ դրանք այնքան էլ մեռած չեն, բացառապես մասնագետների սեփականությունը չեն: Նրանք ապրում են ժամանակակից լեզուների մեջ: Ինչքա՜ն դեղատոմսեր են գրվում՝ բոլորն էլ լատիներեն: Բուսաբանության ու կենդանաբանության մեջ որ՝ բոլոր անվանումներն են լատիներեն: Շատ և շատ գիտությունների մեծ թիվ տերմիններ գալիս են հին հունարենից: Եվ այդ ընթացքը շարունակվում է այսօր էլ: Վերջին տարիներս գոյացավ մի նոր բժշկական գիտություն, որի առարկան ծերության հետ կապված հարցերն են: Այդ գիտությունը և կոչվեց հունարեն գերոնտոլոգիա (ծե-

րունաբանություն): Կա գրաբարյան այսպիսի մի արտահայտություն՝ «Ակն ընդական, ատամ ընդ ատաման», որ նշանակի՝ աչքի դիմաց աչքը հանել, ատամի դիմաց՝ ատամը: Ոչ ոքի մտքով չէր անցնի, որ այդ հնօրյա դարձվածքը երբևիցե կարող է մտնել ժամանակակից հայերենի մեջ: Բայց երբ պայթեց Հայրենական մեծ պատերազմը՝ դա հնչում էր ամեն օր, իբրև ոխերիմ թշնամու դեմ ուղղված արդար վրեժի կոչ:

Եվ առհասարակ՝ հազիվ թե կարելի է հաստատ ասել, թե այս կամ այն բառը կամ արտահայտությունը վերջնականապես մեռել է ու այլևս հարություն չի առնի: Ռուս լեզվաբաններից մեկը նկատել է, օրինակ, որ *шлем* (սաղավարտ) բառը վաղուց ի վեր մեռած էր համարվում, բայց ահա անցան ժամանակներ և կյանքն առաջադրեց այդ բառի պահանջը և նա հարություն առավ, մտավ կիրառության մեջ. հիմա ասում ենք՝ տանկիստի սաղավարտ, տիեզերագնացի սաղավարտ և այլն:

Գրաբարն էլ ժամանակակից հայերենի պահեստն է: Մեկ էլ տեսար գրաբարից այնպիսի բառեր ու դարձվածքներ թև առան ու մտան ժամանակակից լեզվի մեջ, որ ոչ ոք չէր սպասի: Շատ բան է տվել գրաբարն աշխարհաբարին, տալիս է և կտա ապագայում ևս: Ահա ինչու գրաբարն արժանի է խորագույն հարգանքի ոչ միայն իբրև պատմական երևույթ, իբրև մեր ազգային հանճարի բարձրագույն արտահայտություն, իբրև մեր բազմադարյան և բազմադժվար պատմության արտացոլում, իբրև հայ գեղարվեստական մտքի շտեմարան՝ այս ամենն իրենց հերթին: Գրաբարն արժանի է խորին հարգանքի նաև որպես լեզվական ծով հարստություն, որ հիմա էլ պետք է հայերենին:

Տեղին է այստեղ անել մի համեմատություն հայ հին ճարտարապետության և գրաբարի միջև: Հիմա ո՞վ է եկեղեցիներ ու վանքեր կառուցում: Ոչ ոք: Բայց ինչպես հմուտ գրողները հին հայերենից, այնպես էլ հմուտ ճարտարապետները միջնադարյան ճարտարապետությունից շատ բան են վերցնում և ծառայեցնում այսօրվա նպատակներին: Ճիշտ է, կար ժամանակ, երբ մեր հին ճարտարապետությունը համարվում էր մեռած կապիտալ: Բայց, ահա՛, եկավ հանճարեղ Ալեքսանդր Թամանյանը և իր նշանավոր կառույցներում, հատկապես Կառավարական տան մեջ միջնադարյան ճարտարապետության ավանդները գործի դրեց այնպես, որ դրանք հնչում են միանգամայն արդիական, իբրև XX դարի արվեստ:

Ո՛չ հայ հին ճարտարապետությունը, ո՛չ էլ հին հայերենը իրենց դարն ապրած վաստակավորներ չեն, որոնք արժանի են հիացմունքի իրենց պատկառելի տարիքի և հնում մատուցած ծառայությունների համար միայն: Ե՛վ մեկը, և՛ մյուսը մեր ոչ միայն ազգային հպարտությունն են, այլև այսօրվա կյանքի ուղեկիցները:

Գրաբարն այնպես է ներհյուսվել ժամանակակից աշխարհաբարին, որ մենք չենք էլ նկատում: Գրաբար իմացողներն են, որ գիտեն, ասենք, պառկել բառի ստուգաբանությունը՝ պառնել գրաբար մեջք է նշանակում: Բայց այդպիսի հարյուրավոր, հազարավոր բառեր կան ժամանակակից հայերենում: Դրանց գրաբարյան ծագումը չի էլ նշմարվում, բայց քիչ չեն բառեր ու դարձվածքներ, որոնց գրաբարյան ծագումը ոչ թե նշմարվում, այլ երևում է առաջին իսկ հայացքից:

Ոչ միայն գրաբարից, այլև հեռու կամ մոտիկ անցյալի լեզվական իրողություններից եկող բառերն ու դարձվածքները, լեզվաբանները կոչում են հնաբանություններ (արխաիզմներ):

Այդ մասին՝ հաջորդ զրույցում: Վերջում կուզենայինք կրկնել այն, ինչ ասել էինք առաջին զրույցում՝ ընթերցողները կարող են դիմել մեզ այն հարցերով, որ ծագում են իրենց մտքում այս զրույցների առիթով. ի՞նչն է, որ հետաքրքիր է թվում իրենց, ի՞նչն է, որ հասկանալի չէ կամ տեղիք է տալիս տարակուսանքների, վերջապես, ինչի՞ մասին է, որ կուզենային կարդալ հետագա զրույցներում:

Կսպասենք ձեր նամակներին:

# ՄԱՅՐԱՄՈՒՏ

*ՍԱՐԳԻՍ ՇԱՐԱՁՅԱՆ*

Մայրամուտ է, մայրամուտ,
Հովն է շոյում ծառ ու թուփ
Ու երգում օրոր,
Այգում պապիկն է պառկում,
Ամպերը ծափ են զարկում
Երկնքում ողորկ:

Սվսվում են թուփ ու խոտ,
Ձայն է տալիս ճամփի մոտ
Առվակը ճիչով,
Արտում արտույտն է խոսում,
Ամռան գիշերն է հոսում
Հանդերի միջով:

# Շերլոկի պա



*ՄԱՐԻԱՆ ՕՐԼՈՆ*

Այդ պատահեց մի շաբաթ առաջ, երեկոյան: Մենք ֆուտբոլ էինք խաղում: Խաղահրապարակում հավաքվել էր դպրոցի կեսը, ես կանգնել էի դարպասի մոտ: Ծիմեկը հիվանդ էր: Եվ հանկարծ աղմուկ բարձրացավ.

— Որտե՞ղ է Շերլոկը: Կանչե՛ք Շերլոկին: Շո՜ւտ: Շերլո՜կ...

Ֆուտբոլիստները կանգնեցին դաշտի մեջտեղ: Բոլորը դարձան խաղահրապարակի մուտքի կողմը, որտեղից գալիս էր բղավոցը: Այնտեղ կանգնած էր վեցերորդ «Ա»-ի Միկոլյան և գրգռված ձեռքով էր անում, մյուս ձեռքով բռնել էր հեծանիվի ղեկը:

— Դե շու՜տ կանչեք Շերլոկին,— գնալով գազազում էր նա:

Նրա շուրջն արդեն բազմություն էր հավաքվել: Ես հայտնվեցի այնտեղ համարյա Ծիմեկի հետ միաժամանակ: Մոտեցավ նաև Մացեկ Բեցեյյան, որը Միկոլյայի մտերիմն է:

— Ի՞նչ է պատահել,— ձայնեց Ծիմեկը:

— Ճամփա՛ տվեք,— պահանջեց Միկոլյան, հեծանիվը քշելով առաջ և ցույց տալով առջևի անիվը ու տխուր ավելացրեց.— Ա՜յ թե ինչ է պատահել...

— Անվադողը կտրե՞լ են,— դժգոհ բացականչեցինք մենք,— կամերան նույնպես: Ո՞վ է արել:

— Ո՞վ,— Միկոլյան արձակեց ծիծաղ հիշեցնող բացականչություն,— հայտնի է, թե ով. յոթերորդ Ա-ից մեկնումեկը: Վաղը առավոտյան մրցարշավի ենք դուրս գալու, նրանք որոշել են ինձ շարքից հանել: Եվ հանել են,— նրա վերջին բառերը հնչեցին ողբերգական:

Հեծանվային մրցարշավը անողոք մենամարտ էր վեցերորդ Ա-ի և յոթերորդ Ա-ի միջև: Ամբողջ մի ամիս խոսում էին դրա մասին: Ամբողջ մի ամիս լարված պատրաստվում էին: Միկոլյան վեցերորդցիների հույսն էր: Նա յոթերորդցիներից առաջ էր անցել մի քանի շրջապտույտ: Բոլորը համարում էին, որ հաստատ նա է լինելու հաղթողը: Վաղը պետք է նա դափնեկիր դառնար: Եվ հանկարծ խափանվում էր:

Այդ ընթացքում Ծիմեկը կռացել էր անիվի վրա և խոսում էր ինքն իրեն.

— Կտրտել են քոռ դանակով, կտրտված է անհավասար, ուժեղ: Երևում է հանցագործը շտապել է: Հրեշավոր խոզություն է արել,— ասաց նա և ուղղվեց:

Միկոլյան արագ հավանություն տվեց նրա ասածին և ճանկեց նրա ուսը.

— Շերլո՛կ, դու պետք է նրան հայտնաբերես, հասկանու՞մ ես, թող մի ձեռքս ընկնի անողը...

Ծիմեկը կենտրոնացավ այդ «ձեռքս ընկնի»-ի վրա և հարցրեց.

— Որտե՞ղ է այդ կատարվել:

— Մեր տան մոտ: Ճաշից հետո ես մի քիչ քշեցի ու չորսի մոտ գնացի հաց ունելու: Հեծանիվը թողի ցանկապատի դռնակի մոտ: Երբ տասնհինգ րոպեից դուրս եկա, անվադողը կտրտված էր:

— Ոչ ոք աչքովդ չընկա՞վ:

— Ոչ ոք: Միայն հեծանիվի մոտ գտա անհա այս,— Միկոլյան թևի տակից հանեց մի թուղթ,— կարդա՛:

Ծիմեկը արագ շուռ տվեց ու կարդաց.

> **ՎԱՂԸ ՉԵՍ ՀԱՂԹԻ**
>
> **Ամուր ձեռք**

— Ամուր Ձեռք,— փնչաց Միկոլյան,— ես նրան ցույց կտամ, որ իմ ձեռքն ավելի ամուր է:

Ծիմեկը նրա ասածը անուշադրության տալով, գրպանից խոշորացույց հանեց և ուշադրությամբ զննեց թուղթը:

Հետո ասաց.

— Շատ անզգույշն է այս Ամուր Ձեռքը: Այս թուղթը նրան կկործանի:

Միկոլյայի աչքերը փայլատակեցին.

— Ուրեմն դու այդ տիպին կըգտնե՞ս:

— Կփորձեմ,— զգույշ ասաց Ծիմեկը:

Խոսակցությանը խառնվեց Մացեկ Բեցեյյան: Ամբողջ ժամանակ նա տապակած բադի հոտ առած աղվեսի պես պտտվում էր այդտեղ:

— Իսկ ես վստահ եմ, որ չես գտնի:

Տղաները աղմկեցին: Միկոլյան Մացեկին խորհուրդ տվեց ձայնը կտրել, իսկ սա հայտարարեց, որ ինքը Ծիմեկի հետ իր հաշիվն ունի: Դրանով ուզում էր Ծիմեկին թասիբի գցել, որ նա հաստատ խոսք ասի. եթե Ծիմեկն ասի՝ «կըգտնեմ», բայց չգտնի, ինքն իր վրեժն առած կլինի...

Ծիմեկը մտածեց ու ասաց.

— Կգտնեմ:

Մացեկը խորամանկ ժպտաց.

— Իսկ ես ասում եմ՝ չես գտնի: Գրազ գանք:

Ծիմեկը մարտահրավերն ընդունեց.

— Խնդրեմ, ինչի՞ վրա:

— Թեկուզև քո մատիտ սրելու դանակի վրա,— երկար չմտածելով ասաց Մացեկը,— դա մի քիչ նման է այն դանակին, որ ես տարվել եմ: Տարվես՝ դանակդ իմն է: Տանես՝ ինքնահոսս կտամ քեզ: Եղա՞վ:

Նրանք իրար ձեռք տվին, և մեկն էլ խփեց ափով, անջատեց իրարից:

— Ե՞րբ ես կարծում գտնել Ամուր Ձեռքին,— հարցրեց Մացեկը:

— Այսօր կամ վաղը: Ավելի շուտ՝ այսօր:

— Այսօ՞ր,— ուրախացավ Միկոլյան,— հիանալի է: Հենց գտնես, իսկույն իմա՛ց արա ինձ: Ես տանը կլինեմ:

— Լավ: Կգամ:

— Ես Միկոլյայի մոտ կլինեմ,— ավելացրեց Մացեկը:

— Եղավ:

Միկոլյայի տրամադրությունը նըկատելի կերպով լավացավ: Թեև վաղվա մրցումներին մասնակցելը բացառված էր: Ամուր Ձեռքին հանդիպելու հեռանկարը բարձրացրեց նրա ոգին:

— Դե, մենք չքվու՜մ ենք, հիշի՛ր, սպասում ենք մեր տանը:

Միկոլյան և Մացեկը գնացին:

Ծիմեկն ասաց ինձ.

— Գնանք: Մենք շատ գործ ունենք,— և դառնալով տղաներին, ավելացրեց.— Ուրիշ ոչ ոքի հետս չեմ վերցնում: Մի օգնականը ինձ հերիք է:

---

Սկիզբը՝ № 7-ում:

# րտությունը



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Դժգոհ շշուկների ուղեկցությամբ՝ մենք գնացինք պուրակ։

Պուրակը մեծ չէ, բայց լավ խնամված է։ Այնտեղ գալիս էին մեծ մասամբ թոշակառուները ու մայրերը՝ երեխաների հետ։ Թոշակառուները թերթ են կարդում, իսկ մայրերը՝ գործում են։ Այդտեղ հանգիստ կարելի էր խոսել։

Մենք հեշտությամբ գտանք ազատ նստարան ու նստեցինք։

— Ճիմե՛կ,— ասացի ես,— չըգիտեմ դու ճի՞շտ արիր, որ գրազ եկար։

— Եթե չհամաձայնեի, տեղնուտեղը տարված կլինեի, իսկ այս դեպքում կարող է և տանեմ։

— Վախենում եմ չտանես։ Դու ախր ոչ մի հանգանշան չունես։

— Բա թուղթն ի՞նչ է։

— Դե... թուղթը։

Ճիմեկը ներողամիտ ժպտաց։

— Սխալվում ես. գրությունը կարևոր հանգանշան է, այն շատ բան կարող է ասել։ Ուշադի՛ր նայիր դրան։

Թղթին նայեցի և ուսերս բարձրացրի։ Ի՞նչ կարելի է այդտեղ տեսնել, բացի այն, որ Ամուր Ձեռքը զզվելի ձեռագիր ունի։

Ես այդ ասացի Ճիմեկին։

— Դու դիտողականություն չունես,— ասաց նա,— լսի՛ր. այս գրողը հինգերորդ դասարանցի է, դասարանի ամենափոքրերից մեկը։ Այսօր, երբ նա զբաղվել է հեծանիվով... կամ ինչ-որ մեխանիզմով, ձեռքը վնասել է։ Ապրում է Միկուլայենց տանից մոտիկ, նեղ բնակարանում։ Ճաշին բազուկ է կերել։

— Մա՛րդ արարած,— զարմացած բացականչեցի ես,— դու ինչպե՞ս հասար դրան։

— Սովորական։ Ուշադիր նայեցի թղթին, մտածեցի։

— Կատակում ես,— չէի հավատում, թե այդ այդպես է։

Ճիմեկը ներողամիտ ժպտաց.

— Հիմա կհամոզվես, որ չեմ կատակում։ Եվ այսպես, ինչի՞ց իմացա, որ Ամուր Ձեռքը հինգերորդ դասարանում է սովորում, հինգերորդ դասարանը այսօր դասին քառանկյուն է գծել։ Քույրս ինձ ասաց։ Իսկ այս թերթի վրա քառանկյան հետք է երևում։ Թուղթը պոկված է հինգերորդ դասարանցու տետրակից, ահա տես... երևու՞մ է։

Ես տնտղեցի և տեսա քառանկյան պարզ հետքը։ Նա ով գծել էր, ուժեղ սեղմել էր մատիտը և նկարը տպվել էր հաջորդ թերթի վրա, որի վրա էլ Ամուր Ձեռքը գրությունն էր գրել։

— Դու ճիշտ ես, — համաձայնեցի ես։

— Իհարկե։ Գնանք առաջ։ Ես ասացի, որ գրողը այսօր ձեռքը վընասել է։ Այդ ես իմացա թղթի վրա եղած երկու բծերից։ Ահա մեկը՝ մեքենայի յուղ է, իսկ այս՝ չորացած արյուն։ Երբ ձեռքը մեքենայի յուղով յուղոտվել է, նշանակում է նա գործ է ունեցել ինչ-որ մեխանիզմի հետ, թղթի վրա արյան հետք է թողել, որովհետև վնասել է ձեռքը։ Բացատրածս հասկանալի՞ է։

— Շատ հասկանալի է։

— Շնորհակալություն։ Իսկ հիմա նայի՛ր մեքենայի յուղի բծին, ի՞նչ ես տեսնում։

— Մատի հետքի պես բան։

— Այդ է որ կա։ Բթամատի հետք է։ Համեմատիր այն քոնին։ Դե, համարձակ։

— Այն իմից շատ փոքր է։

— Կեցցե՛ս։ Եթե մատնահետքը փոքր է, նշանակում է մատն էլ է փոքր, մատի տերն էլ։ Ահա և քեզ պատասխան, թե ինչպես իմացա, որ Ամուր Ձեռքը փոքր է։

Ես նայեցի Ճիմեկին անճող հիացմունքով, իսկ նա շարունակեց.

— Հետևյալ հարցը նեղ բնակարանի մասին է. գրությունը գրված է խոհանոցի սեղանի վրա։ Դրա ապացույցն է թղթին կպած բազուկի փշուրը։ Խոհանոցի սեղանի վրա գրում են, երբ չեն ունենում դաս պատրաստելու իրենց անկյունը։ Իսկ ինչու՞ չեն ունենում, որովհետև բնակարանը լինում է նեղվածք, փոքր։

— Այո՛։

— Եվ պարզ է՞, թե ինչու ես գտնում եմ, որ Ամուր Ձեռքը ճաշին բազուկ է կերել։

— Հիմա պարզ է։

Ճիմեկը թեթևացած շունչ քաշեց ու հարցրեց.

— Ի՞նչ մնաց մեզ պարզելու։

— Ասացիր, որ Ամուր Ձեռքն ապրում է Միկուլայենց տան մոտ։

— Հա... Ես չեմ կարծում, թե Ամուր Ձեռքը Միկուլայենց տան վրա հսկել է։ Դա վտանգավոր կլիներ։ Դեպքերը զարգացել են այսպես. Միկուլան մարզվելուց հետո հեծանիվը թողել է ցանկապատի դռնակի մոտ։ Միկուլայի հետ հաշիվ ունեցող մեկը պատահաբար նկատել է այդ։ Նա իմացել է, որ վաղվա մրցումներում Միկուլան հաղթանակ տանելու հույս ունի։ Ցանկապատի դռնակի մոտ դրված հեծանիվը նրա մեջ վրեժխնդիր լինելու դաժան միտքն է հարուցել։ Այդ պահից սկսած, հանցագործը գործել է, ինչ որ տենդի մեջ։ Խոհանոցում շտապ-շտապ, ձեռքն ընկած տետրակի թերթը պոկում է և գրությունը գրում։ Հետո վերցնում է հավանաբար խոհանոցի դանակը, գաղտագողի մոտենում է հեծանիվին և անվադողը կտրտում է... Տե՛ս, տառերն ինչ ծուռ-մուռ են, ինչ որ փախչելիս լինեն։ Երևում է, որ հանցագործը գործել է հապճեպ, նա սառնասրտորեն չի պլանավորել իր գործողությունները։ Թե չէ նրա ձեռքերը չէին դողա։ Եվ քանի որ նախապես պլանավորած չի եղել, գրությունը մոտը պատրաստ չի ունեցել։ Նշանակում է նա մոտերքում է ապրում, որ կարողացել է վազել տուն և խոհանոցի սեղանին գրությունը գրել։

Ճիմեկի խոսքի երկարյա տրամաբանությունը խոսելու տեղ չըթողեց։ Ես միշտ հավատացել էի նրա քրեաբանական տաղանդին, բայց չգիտեի, որ այն այդքան մեծ է։ Ես այլևս կասկած չունեի, որ Ճիմեկը գրազը կտանի։

Իմ պանծալի ընկերը իմ հիացմունքին ուշադրություն չդարձնելով՝ շարունակեց.

— Այս գրության մեջ կա և երկու արժեքավոր մանրամասնություն։ Մեկը՝ թանաքի գույնն է։ Այն գրված է կանաչ թանաքով։ Երկրորդը՝ Ա-տառի ինքնատիպությունն է։ Ճիշտ է՝ գրությունը գրըված է տպագիր մեծատառերով, բայց Ա-ն խիստ տարբերվում է, շատ ավելի մեծ է ու պոչը երկար։ Սա կարող է Ամուր Ձեռքի դեմ գըլխավոր հանցանշան հանդիսանալ։ Հիմա քննենք պատճառը։

— Ի՞նչը։

— Պատճառը։ Ինչու՞ է նա ան-

վաղողը կտրտել, Միկոլայի հետ ի՞նչ հաշիվ է ունեցել:

— Դա չէ՞ որ պարզ է: Պատճառը մրցումներն են, ուզեցել է շարքից հանել Միկոլային, ինչպես որ Միկոլան ինքն ասաց:

Շիմեկը գլուխը շարժեց.

— Ես դրանում համոզված չեմ: Այդպիսի ենթադրությունը ճշմարտանման կլիներ, եթե հանցագործը յոթերորդ Ա-ից լիներ և մրցակցին շարքից ուզենար հանել: Բայց Ամուր Ձեռքը, ինչպես մենք արդեն գիտենք, հինգերորդ դասարանցի է:

— Գուցե յոթերորդցիներն են նրան անել տվել,— ասացի ես,— որպեսզի կասկածն իրենցից հեռանա:

— Կարող է,— փոքր-ինչ մտածելուց հետո, համաձայնեց Շիմեկը,— բայց այդ դեպքում էլ Ամուր Ձեռքը ինչ-որ բանի համար պետք է Միկոլային չսիրեր: Առանց լուրջ պատճառի նա այդ չէր անի:

Մենք մտատանջության մեջ ընկանք:

— Պատճառն առայժմ թողնենք,— որոշեց Շիմեկը,— նախ փորձենք Ամուր Ձեռքի անձնավորությունը պարզել, դրա համար մեր ձեռքին բավականաչափ հանգանշաններ կան: Ես հույս եմ դնում ամենից առաջ քեզ վրա: Դու Միկոլայենց փողոցում ես ապրում, այնտեղ բոլորին գիտես: Ուղեղդ շարժի՛ր, մտածիր ո՞վ կարող է լինել Ամուր Ձեռքը: Հիշիր հինգերորդ դասարանցու, փոքր բոյով, որ ապրում է Միկոլայենցից մոտիկ... Դե՛:

Ես սկսեցի տուն առ տուն հիշել, մտովի անցնել բնակարանից-բնակարան, աչքի անցկացնել բակերը: Մինչև Միկոլայենց տուն հասնելը երկու տուն էր մնացել, հանկարծ գլխումս ասես լուսարձակ վառվեց:

— Շիմե՛կ, գտա:

— Ո՞վ է:

— Լուկաշ Վենգժիկը,— հպարտ ասացի ես:

— Վենգժի՞կը:

— Հա՛, բոլոր բաները բռնում են:

— Վենգժի՞կը,— կրկնեց Շիմեկը առանց մազաչափ ոգևորության,— էդ քորփա՞ն... Հիմար բան ստացվեց:

Սկզբում ես ուզեցի վիրավորվել, բայց Շիմեկի ասելու տոնից, թե «էդ քորփան», ես հասկացա, որ Լուկաշը չի համապատասխանում այն հանցագործին, որին մեր երևակայությունը ստեղծել էր: Ամուր Ձեռքը պատկերանում էր մեզ վըտանգավոր, վրիժառու, խորհրդավոր չարագործ... Եվ հանկարծ ահարկու վրիժառուի փոխարեն՝ մի սովորական փոքրիկ տղա, որը ոչ ոքի վատ բան չէր արել: Իմ մայրը նրա մասին ասում էր. «Լուկաշը լավ նեղբայր է, նա ամեն օր իր փոքրիկ քրոջը մանկապարտեզ է տանում»: Շիմեկն իրավացի էր: Հիմար պատմություն ստացվեց: Մենք գիշատիչ էինք որսում, դուրս եկավ ճապաստակ:

— Ի՞նչ անենք,— հարցրեցի ես թևաթափ:

— Պետք է համոզվել... Գնանք նրա մոտ: Խնդրենք որևէ գիրք, խոսենք հետը... կարող է նա որևէ ձևով մատնել իրեն, բայց կարող է և պարզվել, որ մենք սխալվում ենք:

Ես զգացի, որ Շիմեկը ուզում էր վերջինը լինի: Ես նույնպես:

Մենք գնացինք Կանաչ փողոցը: Ճանապարհին հետևում էի Շիմեկին: Նա այս մի քանի րոպեի ընթացքում փոխվել էր: Երբ ինձ բացատրում էր թղթի վրա գտնվող հետքերի նշանակությունը, նա հիշեցնում էր վազքարշավի մեջ գտնվողի, որը պլանում է բարձր պարգևի ետևից, իսկ հիմա նա նման էր վազքարշավի մեջ գտնվողի, որը ֆինիշի մոտ ձեռից բաց է թողել հաղթանակը:

Խաղաղ, այգիների մեջ թաղված միահարկ տներով, Կանաչ փողոցում, մենք դանդաղեցրինք մեր քայլերը և կանգ առանք Լուկաշենց ցանկապատի դռնակի մոտ:

— Կամաց...— ասացի ես:— Եթե նա տանը չլինի՞:

— Տեսնենք,— ասաց Շիմեկը և դռնակը հրեց:

Դռնակը ճռռալով բացվեց:

— Կարծես թե դու իրավացի ես,— համաձայնեց Շիմեկը,— երևում է ոչ ոք չկա:

Նա շավղով գնաց դեպի տուն, բայց կես ճամփին կանգ առավ և բռնեց ձեռքս:

— Նայիր այնտե՛ղ, դռանը...

Այն տախտակի տակ, որի վրա տանտիրոջ ազգանունն էր գրված, խրված էր մի գրություն: Բավական էր նայել այդ թղթին, հասկանալու համար Շիմեկի հուզմունքը: Թուղթը գրված էր կանաչ թանաքով:

Մենք մոտ վազեցինք դռանը, գրությունը հաստատում էր իմ այն ենթադրությունը, որ Լուկաշը տանը չի: Տպագիր մեծ-մեծ տառերը հաղորդում էին. «Ես գետի կողմն եմ գնում, բանալին այնտեղ է, ուր միշտ լինում է, Լուկաշ»:

Բայց գրության բովանդակությունը մեզ համար ոչ մի նշանակություն չուներ: Կարևորը թանաքի գույնն էր և այն, որ քառակի կըրկընվող Ա տառը զարմանալիորեն հիշեցնում էր Ամուր Ձեռքի գրության միջի Ա-ին:

Շիմեկը գլուխը տարուբերեց.

— Այդ նա է: Երևում է՝ գրել է անվաղողը կտրելուց անմիջապես հետո,— և ցավով ավելացրեց.— Ինչու՞ է նա այդ արել:

Այդտեղ ես հիշեցի, թե ինչ էր տեղի ունեցել գարնանային արձակուրդների ժամանակ:

Հիշեցի այնպես պարզ, ասես այդ կատարվել էր երեկ: Կիրակի օր էր: Շագանակենիները ծաղկել էին, երկնքում ամպի ծվեն չկար: Մենք՝ մեր փողոցի տասը տղաներ, հավաքվել էինք զբոսայգում և սպասում էինք Միկոլային: Բոլորս հեծանիվներով էինք, որովհետև Միկոլան կազմակերպել էր ուղևորություն դեպի լիճ: Մեր մեջ էր նաև Լուկաշը: Նա կանգնել էր մի կողմ և չէր մասնակցում մեր աղմկոտ խոսակցություններին: Հավանաբար իր սովորական երկչոտության, իսկ գուցե և իր հեծանիվի պատճառով: Դա հին, խարխուլ մի բան էր, լայն անվաղողերով: Մերոնք նույնպես վերջին արտադրանքից չէին, բայց Լուկաշինը մերոնց կողքին շատ ողորմելի էր:

Ուղիղ տասին հայտնվեց Միկոլան իր մրցարշավային հեծանիվին բազմած, ինչպես ճակատամարտ շահած զորավարը՝ մարտակառքին: «Ողջու՜յն: Պատրա՞ստ եք»: Պատասխանեցինք, որ պատրաստ ենք, և շրջապատեցինք նրան:

Միկոլան նայեց մեզ և մեր մեջ նկատելով Լուկաշին, դեմքն այնպես ծռմռեց, ասես նոր կոստյումի վրա բիծ էր նկատել. «Դու՞ ինչի ես եկել»: Լուկաշը սաստիկ շփոթված կմկմաց, թե՝ ինքն էլ է ուզում գալ: «Այդ խարաբայո՞վ»,— արհամարհանքով նետեց Միկոլան: Լուկաշը սեղմեց մատները ղեկին, հայացքն հառեց անիվներին ու լռեց: «Դե, պատասխանի՛ր,— զայրացավ Միկոլան,— ուզում ես այդ խարաբայո՞վ գալ»: Լուկաշը գլխով արեց: Միկոլան քրքջաց ու ասաց. «Այդ ավերակով միայն ագռավներին կարելի է փախցնել: Գնա՛նք, տղաներ, ժամանակ չըկորցնենք»:

Մենք նստեցինք մեր հեծանիվները ու գնացինք: Ոչ ոք Լուկաշին չպաշտպանեց, գիտեինք, պաշտպանենք՝ Լուկաշի օրը կընկնենք: Միկոլան գիտեր դաժան լինել:

Երբ բավականաչափ հեռացել էինք, ես ետ նայեցի, Լուկաշը շարունակում էր կանգնած մնալ նույն տեղը:

Ես այս ամենը պատմեցի Տիմեկին:

— Սա վրեժխնդրություն է,— ավարտեցի ես:

Տիմեկը լռեց: Ապա խոստովանեց.

— Ցավում եմ, որ հանձն առա այս գործը:

— Բայց հիմա արդեն ուշ է, դու գործը պետք է ավարտին հասցնես:

— Գիտեմ:

— Եվ ի՞նչ ես մտածում անել:

Տիմեկը պատասխանեց հարցով.

— Իսկ դու իմ տեղը լինեիր, ինչպե՞ս կվարվեիր:

Ես անօգնական տարածեցի ձեռքերս.

— Չգիտեմ:

Ես հասկանում էի նրան: Նա կանգնած էր ծանր երկընտրանքի առաջ: Մի կողմում Լուկաշն էր, մյուս կողմը՝ Միկուլան, իսկ մեջտեղն ինքը՝ Տիմեկը, Տերլոկի փառքի հետ: Ո՞ւր է թե կարողանայի նրան օգնել:

Մեկ էլ Տիմեկը վեր թռավ նստարանից և ասաց.

— Գնանք Միկուլայի մոտ:

Ինձ անհանգստացրեց նրա վճռականությունը:

— Տիմե՛կ, ավելի լավ չէ՞ սպասենք: Ինչու՞ ենք շտապում: Դեռ ժամանակ կա: Մտածենք:

Տիմեկն ընդհատեց:

— Ես արդեն մտածել եմ: Գընանք:

— Դու նրան ի՞նչ ես ասելու:

— Կլսես:

Միկուլայենց տան մոտ Տիմեկը թվաց թե տատանվեց, բայց մի պահ միայն, նախքան մատը զանգին տանելը: Զանգի ձայնը բարձրանալուն պես բանալին փականքի մեջ պտտվեց և մենք տեսանք Միկուլային ու Մացեկին: Նրանք իսկույն տեղացին հարցերը.

— Հը՛, ընկա՞ր հետքի վրա:

Տիմեկը նայեց նրանց բորբոքված դեմքերին, ձեռքը դանդաղ գրպանը տարավ, հանեց դանակն ու մեկնեց Մացեկին.

— Սա քոնն է,— ասաց Տիմեկը:

Նրանք այդ չէին սպասում: Մացեկը շփոթվեց, չհամարձակվեց ձեռքը մեկնել դանակին: Միկուլայի գլխին ասես սառը ջուր լցրին: Իսկ ինձ ուտում էր ցավը: Մի կողմից ուրախ էի, որ Տիմեկը այդպես վարվեց, հոգուս խորքում ուզում էի, որ այդպիսին լինի վախճանը, բայց մյուս կողմից... ափսոսում էի, որ Տիմեկը հրաժարվում է փառքից, կամովին ենթարկում իրեն նրանց ծաղրին, ովքեր նախանձում էին իր այդ փառքին:

Զարմանքն աստիճանաբար անցավ: Մացեկը վերջապես համարձակվեց և ձեռքը մեկնեց դանակին, իսկ Միկուլան մռնչաց.

— Ո՛նց թե, չգտա՞ր ով է:

— Չհաջողվեց:

— Գուցե դեռ կհաջողվի,— Միկուլան չէր կորցնում հույսը,— ինչու՞ ես այդպես շուտ ձեռ քաշում:

— Գիտեմ, որ չեմ կարողանա: Հաշիվներս սխալ դուրս եկան:

Միկուլան նայեց ինձ, ասես ըսպասելով, որ հաստատեմ: Ես մեքենաբար գլխով արի: Նա հավատաց և վայրկենապես փոխվեց: Չար հայացքով չափեց Տիմեկին և թշնամաբար նետեց.

— Իսկ ինչու՞ հանձն առար, մե՛ծ քրեախույզ՝ սիշշի՛կ,— բացահայտ ծաղրեց նա,— թե ինձանից մանկապարտեզ գնացող աղջիկ դուրս գա, քեզանից էլ սիշշիկ դուրս կըգա, հասկանալի՞ է: Ինքնահոսի պատմությունն էլ սարքովի էր՝ կեղծիք, իսկ Մացեկի գործն էլ խառնախշտիկ արեց Խայլցեժը: Ա՛յ թե ինչ, ախպե՛րս:

Տիմեկը չպաշտպանվեց, շուռ եկավ գնաց: Ես հետևեցի նրան:

Միայն փողոցում նա բացեց բերանը: Նրա ձայնը դեռ ականջումս է.

— Այլ կերպ չէի կարող: Հասկացի՞ր, չէի կարող: Այլ բան՝ եթե Միկուլան ուրիշ մարդ լիներ: Բայց դու հո գիտե՛ս Միկուլային: Մի՛ կարծիր, թե Լուկաշի արարքը իմ սրտովն է: Դա խոզություն է: Բայց հասկանում եմ նրան: Ես ուզում եմ, որ նա էլ ինձ հասկանա: Նրա հետ ես անպայման կխոսեմ: Դա ավելի դժվար է, քան Միկուլայի հետ խոսելը: Բայց հույս ունեմ, որ նա կհասկանա: Դու ի՞նչ ես կարծում:

— Իհարկե կհասկանա,— վստահ ասացի ես:

Անցել է մի շաբաթ: Չգիտեմ Տիմեկը Լուկաշի հետ խոսե՞լ է, թե՞ ոչ: Բայց գիտեմ, որ Տիմեկի պարտությունը դպրոցում բոլորի բերանի ծամոնն է դառել, Մացեկը ամենուր պարծենում է մատիտ սրելու դանակով, վեցի Ա-ն ծաղրում է Տիմեկ քրեախույզի տաղանդը, իսկ Տիմեկը այդ ծաղրն ընդունում է հանգիստ և տարված է մակուլատուրա հավաքելով:

Մակուլատուրա հանձնելու տեղում նա շարունակ հանդիպում է Լուկաշ Վենգժիկին:







# ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆ

Երբ քաղաքների բնակչության թիվը մոտենում է մեկ միլիոնի, մարդատար վերերկրյա փոխադրամիջոցները՝ տրամվայը, տրոլեյբուսն ու ավտոբուսը, ի վիճակի չեն լինում բավարարել մարդկանց պահանջները։ Դրա համար էլ թե՛ ժամանակի, թե՛ հարմարության տեսակետից ավելի շահավետ և օգտակար է ստորգետնյա էլեկտրագնացքը։ Ի տարբերություն մյուս փոխադրամիջոցների, մետրոպոլիտենը կարճ ժամանակամիջոցում ավելի մեծ քանակությամբ ուղևորներ է տեղափոխում։

Մետրոպոլիտենը ֆրանսերեն արտահայտություն է և բառացի թարգմանությամբ նշանակում է մայրաքաղաքային։ Դա էլ ըստեղծվել է հունարեն գլխավոր քաղաք բառերից։

Առաջին մետրոպոլիտենը կառուցվել է Լոնդոնում 1860—63 թվականներին. 6,6 կիլոմետր ընդհանուր երկարությամբ։ 1868 թվին մետրոպոլիտեն է կառուցվել Նյու-Յորքում։

Այդ մետրոպոլիտենների գնացքները սկզբնական շրջանում աշխատում էին շոգեքարշերով։ Դարավերջում շոգուն փոխարինելու եկավ էլեկտրաէներգիան, որը մետրոն ազատեց ծխից ու գազերից։

Եվրոպական մայր ցամաքում առաջին մետրոն կառուցվել է Բուդապեշտում՝ 1896 թվականին, իսկ 1900 թվականին՝ Փարիզում, երկու տարի անց՝ Բեռլինում։

## ՄՈՍԿՈՎՅԱՆ ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆԸ

Դարասկզբին ինժեներ Բալինսկին մի քանի անգամ ներկայացրեց Մոսկվայի մետրոյի նախագիծ։ Սակայն ինչպես նրա, այնպես էլ մյուսների ներկայացրած նախագծերը քաղաքային դուման մերժում էր, գտնելով, որ ստորգետնյա երկաթուղու կառուցումը չի բխում քաղաքի կենսական ու տնտեսական պահանջներից, իսկ ներկայացված նախագիծը հանդիսանում է «քաղաքի բարենորոգման, բարետեսության, բնակչության բարեկեցության, հոգևոր և նյութական հետաքրքրությունների կոպիտ խախտում»։

Միայն հեղափոխությունից հետո, 1935 թվականին Մոսկվայում բացվեց մետրոպոլիտենի առաջին հերթը. 11 կմ երկարությամբ, 13 կայարաններով։ Թեև Մոսկվայում ավելի ուշ կառուցվեց մետրոպոլիտեն, քան աշխարհի այլ խոշոր քաղաքներում, սակայն ներկայումս այն ամենախոշորն է համարվում և կահավորված է ժամանակակից բարձրորակ հարմարանքներով ու ավտոմատ սարքավորումներով։ Եթե օրինակ, ինչ-որ պատճառով մեքենավարը չլսի կանգնելու մասին ազդանշանը, ապա անհրաժեշտության դեպքում մեքենան կանգնում է ինքնուրույն՝ հատուկ սարքերի միջոցով։

Մոսկովյան մետրոպոլիտենի կայարանները (ճարտարապետական գրավիչ լուծումների, ռուսական ժողովրդական արվեստի լավագույն ձևերի կիրառման շնորհիվ) իսկական պալատների են նման, որտեղ ամեն ինչ արված է բարձր ճաշակով ու մեծ վարպետությամբ։




* * *

* Մեկ օրվա ընթացքում մայրաքաղաքի մետրոպոլիտենի թունելներում երթևեկում են 6645 գնացքներ։ Նրանք փոխադրում են ավելի քան վեց միլիոն ուղևոր։ Ռեկորդային օր է արձանագրվել 1977 թվականի մարտի 25-ին։ Այդ օրը 1220 ստուգման կետերով անցել է 7 միլիոն 860 հազար մարդ։

* Կայարաններում ուղևորներին բարձրացնում ու իջեցնում են 588 մեծ ու փոքր շարժասանդուղքներ, որոնց ընդհանուր երկարությունը կազմում է մոտ 88 կիլոմետր՝ ավելի քան 95 հազար աստիճաններով։

* Մետրոպոլիտենի շքամուտքերում տեղադրված է դրամ մանրող 1598 ավտոմատ։ Մեկ օրում ուղևորները ավտոմատ հսկիչների մեջ գցում են ավելի քան 21 տոննա հինգ կոպեկանոցներ։

* Մետրոպոլիտենի բոլոր շարժիչները, սարքավորումներն ու [illegible]ներն աշխատում են ստորգետնյա էլեկտրական ենթակայաններից ստացվող հոսանքով։ Մեկ օրվա ընթացքում դրանք արտադրում են այնքան էլեկտրաէներգիա, որքան պահանջվում է մի մարզային կենտրոնի սպասարկման համար։ Եթե ստորգետնյա տնտեսության բոլոր լուսավորումները պատկերացնենք մի մեծ ջահի տեսքով, ապա նրա լապտերների թիվը կհասնի 350 հազարի։

* Մոսկովյան մետրոպոլիտենի շահագործվող մասի երկարությունը մոտ երեք հարյուր կիլոմետր է։ Եթե դրանք միմյանց կցենք իրար, ապա այն Մոսկվայից Լենինգրադ կհասնի։

* Թունելներում հարյուրավոր օդափոխիչներ են գործում, որոնք ժամում 3—4 անգամ օդափոխում են մետրոպոլիտենը։ Յուրաքանչյուր օր դրանք 5 միլիարդ խորանարդ մետր թարմ օդ են մղում թունելներն ու կայարանները։

*Օգոստոսի 12-ը շինարարի օրն է*



«ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ-ԹԱՏԵՐԱԿԱՆ»

# ԵՐԵՎԱՆԻ ՄԵՏՐՈՆ

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն... Հարգելի՛ ուղևորներ, մեր ստորգետնյա էլեկտրական գնացքը ուղևոր վերցնելով «Կիևյան կայարանից» անցնելու է «Բարեկամություն», «Ուսանողական-թատերական» «Լենինի հրապարակ», «Հոկտեմբերյան» կայարաններով և հասնելու է երկաթուղային կայարան...

Այսպիսի կամ մոտավորապես այսպիսի հաղորդում առաջին անգամ կլսի նա, ում բախտ վիճակվի եկող տարվա նոյեմբերի վերջին՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակի օրերին, լինել ստորգետնյա էլեկտրական երկաթուղու առաջին ուղևորներից։ Այդ օրը 2762-ամյա քաղաքը կհարստանա նոր տեսարժան վայրով՝ մետրոպոլիտենով։

Ինչպես վկայում են շինարարները, Երևանի ընդերքը քմահաճ է և յուրաքանչյուր սանտիմետրը դժվարությամբ է զիջում։

Բավական չէ, որ թունելները մեծ մասամբ անցնում են քարերի ու հսկայական ժայռերի միջով, շինարարների ճանապարհը հաճախ փակում են նաև ստորգետնյա ջրերը։ Թեև մետրոյի առաջին հերթը դեռևս ավարտված չէ, բայց արդեն քառասուն կետերում հորատանցքեր են արված, որպեսզի ստորգետնյա ջրերը դուրս մղվեն։ Դրանց ծավալը պատկերացնելու համար բավական է ասել, որ այժմ առանձին հորատանցքերից դուրս է մղվում ժամում մոտ մեկ հազար խորանարդ մետր ջուր։ Այդքանը լիովին բավարար է քաղաքի փողոցները ջրելու, ջրավազանները ու լճակները, նույնիսկ Կիրովի անվան հսկա քիմկոմբինատը թարմ ու սառը ջրով ապահովելու համար, բայց այդ ջրերն առայժմ խանգարում են թունելագործներին, դժվարացնում նրանց գործը։ Այդպիսի քանակության ստորգետնյա ջրեր հազվադեպ են պատահում մետրոպոլիտենների շինարարությունում։

Երևանի մետրոյի առաջին հերթը ունենալու է հինգ կայարան՝ 11,8 կիլոմետր ընդհանուր երկարությամբ։

Չնայած տեղանքի և բնակլիմայական դժվարին պայմաններին, արդեն փորված է տասը կիլոմետր երկարությամբ թունել։ Այժմ «Կիևյան» կայարանից գետնի տակով կարելի է գնալ մինչև «Հոկտեմբերյան» կայարանի մուտքը, և դա թունելագործների բազմազգ բանակի քրտնաջան աշխատանքի արդյունքն է։

Արդեն երևապատման ու ճարտարապետական ձևավորման է հանձնված «Կիևյան» կայարանը։ Հերթի են սպասում «Բարեկամություն», «Ուսանողական-թատերական», «Լենինի հրապարակ» կայարանները։

Երկաթուղային կայարանից մետրոն դուրս է գալիս ընդերքից և մինչև «Թամանցիներ» կայարանը ընթանալու է գետնի վրայով, իսկ այնուհետև նորից գետնի տակ մտնելով հասնելու է «Հայէլեկտրագործարան», որը առաջին հերթի վերջին կայանն է լինելու։ Դրանով չի սահմանափակվելու մայրաքաղաքի մետրոյի շինարարությունը։ Հաստատված է նաև ստորգետնյա ուղու երկրորդ հերթը։ Այն գլխավոր ուղուն կմիացնի Երևանի Նորքի զանգված, Էրեբունի, Շահումյան, Քանաքեռ և այլ թաղամասեր։

Երևանյան մետրոպոլիտենը շահագործման հանձնելուց հետո Կոմիտասի փողոցից մինչև Սպանդարյանի հրապարակ հասնելու համար կպահանջվի ոչ թե մեկ ժամ, այլ... 10 րոպե։

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*

«ԿԱՅԱՐԱՆԱՅԻՆ»







# Ջեյ

ԳԵՎՈՐԳ ՋԱՐԵՆՑ

Հայրս Ղազախի գյուղերից Ջեյրան անունով մի էշ էր առել, գցել ավտոմեքենայի թափքն ու բերել: Մեր թաղի մեծ ու փոքր հավաքվել էինք էշի շուրջը:

— Հարևա՛ն, էլ ի՞նչ է պակաս, տրանսպորտով էլ ապահովվեցիր,— իր պատշգամբից հեգնանքով ձայն տվեց մեր հարևան ուստա Սամվելը: Սամվելը վարորդ էր և մեր գյուղաքաղաքում առաջին մարդն էր, որ սեփական «Պոբեդա» ուներ:

Հայրս չպատասխանեց, թեև ես տեսա, որ վիրավորանքից մինչև ականջները կարմրեց: Սամվելը իջավ աստիճաններով՝ էշին մոտիկից տեսնելու:

— Էս հո Քյոռօղլու Ղռա՞թն է,— դեռ հեռվից ըսկըսեց նա:

— Ղռաթը ձի էր, Սամվե՛լ: Սա էշ է, է՜շ,— այս անգամ կով չգնաց հայրս,— էշն ու ձին չես ջոկո՞ւմ:

Հորս խոսքի վրա ծիծաղեցին հավաքվածները, իսկ Սամվելը խոժոռվեց ու կես ճամփից ետ դարձավ:

Ջեյրանի մուտքը մեր բակը մեծ ուրախություն պատճառեց մեզ՝ երեխաներիս: Անտառից վառելափայտը, հանդից՝ խոտը ձեռնասայլակով չէինք բերելու, աղբյուր ջրաղաց շալակով չէինք տանելու: Թող ուստա Սամվելը ինչ ուզում է ասի, մեր «Պոբեդան» էլ մեր Ջեյրանն է:

Մայրս մեր դռանը ավանակին տեսնելով, մի կողմից ուրախացավ, մենք՝ երեխաներս, վերջապես ազատվեցինք ծանր բեռ կրելուց, մի կողմից էլ տըխրեց. հայրս էշը թանկ էր առել:

— Տնաշենի մարդը մի փեշ փող է տվել, մի էշ առել:

Հայրս մորս խոսքերը չլսելու կամ կատակի էր տալիս.

— Դարդ մի՛ անի, ա՜յ կնիկ, էս էշը մի երկու ամսում իր գինը կհանի:

— Ո՞նց պիտի հանի:

— Ամեն օր, դասերից հետո, որ երեխեքը անտառից մի բեռ փայտ բերեն, ծախենք, երկու ամսվա մեջ գինը դուրս կգա, էշն էլ կմնա մեզ փեշքեշ:

— Երեխեքի վրա հալ է մնացե՞լ,— նեղսրտում էր մայրս:

— Ոչինչ, տղամարդի ջանը աշխատանքում է պնդանում, բա ի՞նչ ես կարծում:

Մենք լսում էինք հորս խոսքերը և թևավորվում: Չէ՞ որ նա մեզ արդեն տղամարդ էր համարում: Մեծը ես էի՝ տասնվեց տարեկան, իսկ մյուսները ինձնից երկուական տարով փոքր էին:

Մի քանի անգամ, կիրակի օրերին, հայրս, էշն առած, մեզ էլ իր հետ անտառ տարավ, սովորեցնելու, թե ինչպես պետք է փայտը բարձել, փալանը ծըռվելու ժամանակ փորքաշը ձգել, անհրաժեշտության դեպքում նոր ճղմակներ պատրաստել ու էլի նման բաներ: Էշը ճանապարհ էր ընկնում՝ տնքալով ծանր բեռի տակ: Իսկ հայրս մի մեծ փայտ ուսին դըրած, որ մի երկու օրվա վառելիք էր, հետևում էր Ջեյրանին: Ջեյրանը արագ-արագ փոխում էր ոտքերը և երբ հոգնում էր, կանգ էր առնում, հանգստանում մի պահ ու շարունակում ճանապարհը: Տուն հասնելուն պես՝ հայրս ուսին դրած վառելափայտը մի կողմ էր դնում ու բեռնաթափում Ջեյրանին: Մայրս զայրանում էր հորս վրա, որ էշին շատ է բարձել, իսկ ուստա Սամվելը ամեն անգամ էշին այդքան բարձած տեսնելիս, զարմացած բացականչում էր.

— Պա՜հ, քո տունը չքանդվի, մի ավտո փայտ ես բարձել:

— Վնաս չունի, հարևա՛ն,— մեղմ ասում էր հայրս,— էշի բեռը ինչքան ծանր լինի, էնքան արագ կգնա:

— Դե գոնե քե՛զ խղճա, ա՜յ մարդ,— շարունակում էր մայրս:

— Շատ մի՛ խոսի: Ո՞վ է տեսել, որ անտառից մարդը դատարկ տուն դառնա,— ասում էր հայրս ու ժպտալով նայում մեզ:

Մեղք էր Ջեյրանը: Նրա հանգստյան օրը միայն անձրևախառն օրն էր: Մնացած օրերին հանգիստ չուներ: Կամ անտառի փայտ բերելու, կամ ջրաղացը ցորեն ու գարի տանելու էինք քշում, կամ էլ հարևանները էին խնդրում իրենց կարիքների համար: Մերժում չկար: Հարևան չունեինք, որ մեր Ջեյրանի «ծառայություններից» օգտված չլիներ, բացի ուստա Սամվելից: Սա էլ հպարտ էր ու լավտոյի տեր, սազական չէր ավտոյից իջնել, էշի ետևից գնալ:

Օրերը իրար հրելով գլորվում էին, բայց մեր փայտ բերելու «գրաֆիկը» չէր փոխվում: Հերթով անտառից փայտ էինք բերում: Ճիշտ է, մենք հորս չափ չէինք կարողանում էշին փայտ բարձել կամ ուսած բերել, բայց և այնպես բարձում, բերում էինք: Ջեյրանը քայլում էր թեթև, ո՛չ քրտնում էր, ո՛չ էլ տնքում: Առանց ճիպոտահարվելու անտառից հասնում էր մեր բակը և խելոք սպասում բեռնաթափվելուն:

Մի օր անտառից փայտ բերելու էր գնացել Սուրենը և ուշանում էր:

— Ո՞վ գիտի, երեխան ձեռքն է կոտրել, ոտն է կոտրել,— լացակումած ասաց մայրս,— մի գնացեք տեսե՛ք՝ ի՞նչ է պատահել:



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

# րանը

Ահը մեր սիրտն էլ ընկավ:

Հորս հետ դուրս եկանք տնից ու գնացինք դեպի Փիշիկի ղաժուտները: Միշտ այնտեղից էինք մեր վառելափայտը բերում:

Գարնան մշուշոտ երեկո էր: Մինչև հասանք անտառ, մութը թանձրացավ ու լցվեց ձորերը, փաթաթվեց ծառերին:

— Սուրե՜ն, Սուրե՜ն,— ես ու հայրս հերթով սկսեցինք ձայն տալ: Մեկ էլ շատ մոտ, քարափի եզրից լսեցինք նրա արտասվախառն ձայնը: Շտապեցինք ձայնի կողմը, և ինչ տեսանք: Քարափի եզրին բեռնաթափված կանգնած էր Ջեյրանը, իսկ եղբայրս երկու ձեռքերը պարզած երկինք, աղաչում էր. «Ա՜խ, աստված, երանի կամ իմ հոգին առնես, կամ մեր էշի»: Կուզեկուզ, ղաժենիների ճյուղերը մի կողմ տանելով, նեղլիկ արահետով հազիվ հասանք քարափի գլուխը: Ներքևը անհեղի ձոր էր, գլորվողի մեծ թիքան ականջը կմնար:

— Էս ո՞նց է էս անտերը հասել այստեղ,— ասաց հայրս: Ու եղբայրս պատմեց՝ թե ինչպես...

Էշը բարձած տուն գալիս՝ եղբայրս ծաղիկներ է տեսնում ճանապարհին: Մինչ նա քաղում է ծաղիկները, փունջ կազմում, Ջեյրանը, իր խելքով, ընտրում է իբր տուն տանող ամենակարճ արահետը և գլուխը կախ առաջ գնում և հասնում ու կանգնում է քարափի եզրին: Բեռը մեջքին՝ հնար չի գտնում ետ շրջվելու: Ծառերի ճյուղերը խանգարում են: Ստիպված եղբայրս բեռը թափում է, որ ետ շրջի Ջեյրանին, նորից բարձի, չի կարողանում: Եվ հուսահատությունից սկսում է լաց լինել...

Քարափի գլխից փայտը երեքով խտտած բերեցինք բացատը: Այստեղ նորից բարձեցինք Ջեյրանին ու ճանապարհ ընկանք դեպի տուն:

Երկար ծառայեց մեզ Ջեյրանը: Մենք՝ երեխաներս, մեծացանք, ուսում առանք, անցանք աշխատանքի:

Մի տարի, ուստա Սամվելը, որ արդեն կովերի տեր էր, կնոջը թոռների հետ սարը տարավ: Նեղ, քարքարոտ, հեղեղներից քրքրված էր սարի ճանապարհը: Էշն ու ձին հազիվ էին այդ ճանապարհով բարձրանում-իջնում, ինչ մնաց ուստա Սամվելի «Պոբեդան» բարձրանար: Սարվորների համար հարկավոր էր վառելափայտ, ալյուր ու նավթ և էլի հազար ու մի բան տանել: Սարը բարձրանալուց երկու շաբաթ անցած, ուստա Սամվելը մեր դուռը թակեց.

— Հարևա՛ն ջան,— անուշ-մեղուշ դիմեց նա հորըս,— էշը չես տա՞, սարը տանեմ: Երեխեքը լուր են ուղարկել, որ ալյուրը հատել է:

Հայրս հիշաչար մարդ չէր, մոռացել էր նրա հեգնանքը, երբ Ջեյրանին նոր էինք իջեցրել մեքենայից:

— Ինչու՞ չեմ տա,— ասաց հայրս,— գտեք-տարեք:

Ջեյրանը այժմ հազվադեպ էր մեզ օգտակար լինում: Վաղուց արդեն վառելափայտը անտառից մեքենայով էինք բերում, ջրաղացը աղուն չէինք տանում՝ հացը խանութից էինք առնում: Այնպես որ Ջեյրանը լիակատար ազատության մեջ էր: Առավոտյան Ջեյրանին գոմից հանում, տանում էինք հանդ, երեկոյան ինքն իրեն գալիս էր, կանգնում գոմի առաջ:

Ուստա Սամվելը երբ սարից վերադարձավ ու վերադարձրեց Ջեյրանին, հայրս խորհրդի կարգով ասաց.

— Ուստա, քեզ համար մի էշ առ, որ ամեն անգամ հարևանի դուռը չգնաս:

— Որ Ջեյրանի նման մի լավ էշ լինի, կառնեմ:

— Մեր Ջեյրանին հավանու՞մ ես:

— Շատ: Լավ ապրանք է:

— Որ այդքան հավանում ես կծախեմ՝ առ:

— Բա դու՞ք...

— Ես ինչ էլ առնեմ՝ իմ ձեռքին Ջեյրան կդառնա:

— Քանիսո՞վ կտաս,— հորս խոսքը կտրեց ուստա Սամվելը:

Հայրս ասաց այն գինը, որով գնել էր:

— Հարևա՛ն, բա ամորտիզացիան դուրս չես գալի՞ս:

— Ամորտիզացիան ո՞րն է:

— Մաշվածությունը,— բացատրեց ուստա Սամվելը:

Հայրս քահ-քահ ծիծաղեց, հետո ավելացրեց.

— Առաջին անգամ եմ լսում էշի մաշվածության մասին: Մեր Ջեյրանին գոնե էդ խոսքը չի սազում: Բա նա մաշված էշ է՞...

Հորս խոսքի վրա այս անգամ ուստա Սամվելը ծիծաղեց, ու ձեռքը մեկնեց, ասել է թե համաձայն էր հորս առաջարկած գնին... Բայց հայրս նրա ձեռքը չբռնեց:

— Չէ՜, Ջեյրանին չեմ ծախի, Ջեյրանը թոռներիս ուրախությունն է, ասֆալտի վրա հեծանիվ քշելուց հոգնում են, նստում են Ջեյրանին և ուզած կողմը գնում: Դու քեզ համար է՛շ առ, հարևա՛ն ջան, մենք էլ մեզ համար, էս է, ավտո ենք առնելու:

Հայրս կատակ չէր անում: Պատրաստվում էինք գոմի կողքին գարաժ պատրաստել՝ առաջիկայում գնելիք ավտոյի համար:



# ԵՐԵՎԱՆԻ ԳԵՂԱՍԱՀՔԻ ԴՊՐՈՑԸ

Հնչում է երաժշտությունը: Հանրահայտ վալսի հնչյունների ուղեկցությամբ պարային զույգը աննկարագրելի թեթևությամբ պտտվում է սառույցի վրա: Որքա՞ն ներդաշնակություն կա նրանց շարժումներում: Որքա՞ն հմայք: Մարում են վերջին հնչյունները: Սառույցին՝ չմուշկների թողած կորագծերի վրա «բուսնում են» ծաղիկներ՝ հանդիսականների ոգևորության ու հիացմունքի գնահատականը:

Ու՞մ չեն հուզել Լյուդմիլա Պախոմովայի ու Ալեքսանդր Գորշկովի սառցապարերը՝ «Կումպարսիտան», Խաչատրյանի վալսը... Եվ ինչու՞ միայն նրանք, և ինչու՞ միայն պարայինը: Գեղասահքի բոլոր ձևերն էլ անտարբեր չեն թողնում մարդկանց: Ինչպիսի մրցում էլ լինի, սկսած՝ միութենականով ու վերջացրած աշխարհի առաջնությունով, նրանք տեղ են գրավում հեռուստացույցների երկնագույն էկրանների առջև ու կլանված հետևում այս գեղեցիկ մարզաձևի վարպետների ելույթներին:

Գեղասահքը երկրպագուների մեծաթիվ բանակ ունի նաև մեր հանրապետությունում, ուր պահանջ դարձավ գեղասահքի մարզադպրոց ունենալու հարցը:





Դպրոցը բացվեց 1972-ին, բայց միայն 1975 թվի աշնանը ապահովվեց սառցադաշտով, դարձավ ինքնուրույն մարզադպրոց: Նրա իսկական գործունեությունն ընդամենը չորս տարվա կյանք ունի: Այս կարճ ժամանակաշրջանում պատրաստվել են վարպետության 7 թեկնածուներ, մեծահասակների 20 առաջին ու 13 երկրորդ կարգայիններ, շուրջ 80 պատանեկան կարգային մարզիկներ: Ուշագրավ է այն, որ մարզադպրոցի երկու սաներ՝ քույր ու եղբայր Հասմիկ և Գուրգեն Վարդանյաններին հրավիրել են Մոսկվա՝ մարզական թեքումով դպրոց, կատարելագործելու իրենց վարպետությունը:

Ներկայումս մարզադպրոցում պարապում են շուրջ 850 երեխաներ (արդեն գործում են 21 խումբ): Խոստումնալից սաներից են Սամվել Հայրապետյանը, Սահակ Մխիթարյանը, Ստեփան Ազիզյանը, Ալինա Բաղալյանը, Վարսիկ Վասիլյանը, Աշխեն Բարսեղյանը, Նունե Մինասյանը, Արարատ Զաքարյանը:

1978 թվին առաջին անգամ մուտք գործելով միութենական մրցասպարեզ, մարզադպրոցի սաները մասնակցեցին «Բյուրեղապակյա չմուշկներ» մրցաշարին (Ուֆայում), Օդեսայում անցկացված մրցամար-



տային հանդիպմանը, Դոնի Ռոստովի համամիութենական մրցումներին, ՍՍՀՄ ժողովուրդների ձմեռային 4-րդ սպարտակիադայի՝ վարպետության թեկնածուների ծրագրով մրցումներին (Սվերդլովսկում), վերջապես, Լենինգրադի ու Վորոնեժի թիմերի հետ մեկտեղ՝ Երևանի բաց առաջնությանը:

Սակայն մինչև մեծ մրցասպարեզները գեղասահքի մարզադպրոցը բավականին ճանապարհ ունի անցնելու:

— Երևանում այժմ աշխատանքներ են տարվում միջազգային մասշտաբի նոր սահադաշտ կառուցելու ուղղությամբ,— ասում է մարզադպրոցի դիրեկտոր, ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ Մ. Հովհաննիսյանը: Դա, անշուշտ, կընդարձակի մեր աշխատանքային ծրագրերը, կխթանի վարպետության աճին: Գեղասահքով շատերն են հրապուրված, շատերն են ուզում գնալ սահադաշտի «աստղերի» ոտնահետքերով: Սակայն դպրոց ընդունվել ցանկացող 5-ամյա երեխաների համար այս բարդ ու դժվարին մարզաձևն ունի իր պահանջները. ֆիզիկական համապատասխան տվյալներ՝ ցատկունակություն, ճկունություն, թեթևություն: Ու եթե քննությունը հաջող է, ապա հաջորդ խոսքն արդեն կասեն մարզչական աշխատանքն ու իրենք՝ սաները:

*ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ*

Երևանի գեղասահքի դպրոցում կայացավ մայրաքաղաքի բաց առաջնություն, որին մասնակցում էին նաև Վորոնեժի, Տալլինի, Կույբիշևի մարզադպրոցների սաները: Մրցանակային տեղերը գրավեցին մեր մայրաքաղաքի գեղասահորդները:

ՆԿԱՐՆԵՐՈՒՄ.—

● Մարզադպրոցի փակ սահադաշտը:

● Տղաների մենասահքում մրցանակային առաջին տեղը գրավեց Սահակ Մխիթարյանը, երկրորդը՝ Սամվել Հայրապետյանը, երրորդը՝ Արարատ Զաքարյանը:

● Աղջիկների մենասահքում մրցանակային առաջին տեղը գրավեց Վարսիկ Վասիլյանը, երկրորդը՝ Նանե Մինասյանը, երրորդը՝ Սեդա Տեր-Մինասյանը:

● Աղջիկների մենասահքի հաղթող Վարսիկ Վասիլյանը:

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ԽԱՐԱԶՅԱՆԻ ԵՎ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

# Բարև, բարև...

*(Փոխադրություն անգլերենից)*

Մի օր մածուն տարա շուկա,
Օրը պարզ էր, արև,
Ինձ մոտեցավ մի ծերունի,
Ասաց՝ բարև՛, բարև՛:

Ես ասացի՝ բարև՛, բարև՛,
Նա էլ ասաց՝ բարև՛,
Ես ասացի նորից՝ բարև՛,
Նա էլ ասաց՝ բարև՛:

Թթվեց մածունն ամանի մեջ,
Կորավ լույս ու արև,
Բայց դեռ իրար ասում էինք՝
Բարև՛, բարև՛, բարև՛:

*ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*

# Պղպջակը

*ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ*

Մի պղպջակ ելած ջրից՝
Գոռոզաբար խոսեց այսպես.
— Հապա, խնդրե՛մ, նայեցեք ի՛նձ
Տեսեք որքա՜ն փայլուն եմ ես:
Գույներ ունեմ քանի-քանի,
Կարմիր, կապույտ, դեղին, կանաչ...
Ես պսակն եմ ծիածանի,
Գարնան թագը՝ հանրաճանաչ:

Եվ ամենքը լուռ նայեցին.
Պղպջակն էր ուռել, փքվել,
Մեկ էլ գեփյուռն եկավ այցի
Եվ ցանկացավ գրկել, գգվել...
Բայց ի՞նչ եղավ, այս ի՞նչ եղավ,
Պղպջակը գոռոզացած,
Իսկույն պայթեց,
Օդում ցնդեց,
Մի աննշան հետք չմնաց...

# ՓՈՔՐԻԿ ԱՐԵՎՆԵՐԸ

ՀԱՄՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

Փոքրիկը հիասթափված էր: Ամբողջ ձմեռը երազել էր պարտեզով այդ տնակի մասին, մի պարտեզ, որտեղ մանկական անզուսպ երևակայությամբ աճեցրել ու խնամել էր նկարներից ու կինոներից իրեն ծանոթ բոլոր ծառատեսակներն ու ծաղիկները՝ սկսած ալպիական մանուշակից մինչև մերձարևադարձային թուզն ու խուրման:

Եվ ահա, գարնանամուտին, երազներում փայփայած կախարդական այգու փոխարեն լոկ ցանկապատված մի տարածություն էր տեսել, որտեղ անարգել մոլախոտն էր աճում և կիսափուլ պատերի երկարությամբ հիվանդ ու կիսաչոր մի տասնյակ ծառեր էին բարձրանում:

Տան նախկին տիրոջը՝ իր ծառերի նման խնամքի կարոտ ծերունուն, վերջապես համոզել և իր մոտ էր տարել մեծ քաղաքում ապրող որդին:

Եվ ահա, վաղ առավոտյան, պատի տակ մոլախոտերի մեջ մի թուփ էր հայտնաբերել, որի վրա արևածաղկի պես դեղին գլխիկներով երեք ծաղիկ էր միանգամից բացվել: Եվ ոգևորությունից կարմրատակած, մոռացած խաղ ու նախաճաշ, նա մաքրում էր մոլախոտերը, փխրեցնում ծաղիկների շուրջը, ջրում և անվերջ հիանում նրանցով:

Ողջ ճաշի ընթացքում մտքով չհեռանալով իր փնտրածից, իր գտածից, իր խնամածից, նա կրկին դուրս վազեց, ինձ էլ հրավիրելով հիանալու իր փոքրիկ-փոքրիկ արևներով, ինչպես կոչել էր ծաղիկներին:

Սակայն հիանալ ինձ չվիճակվեց, դեռ պարտեզ չմտած, տեսա լացակումած փոքրիկիս, որի բռնցքաչափ դեմքն այնքան հուզված էր, այնքան անօգնական, որ ես վախեցած մոտ վազեցի:

— Նրանք նեղացել են ինձնից և փակվել, նրանք չեն ուզում այլևս ինձ նայել,— հեկեկաց նա՝ խոսքը վիրավորանքով:

Ես մի պահ նույնիսկ չհասկացա, թե ինչի մասին է խոսքը և գրկելով նրան՝ հարցրի.

— Ովքե՞ր են նեղացել, ինչու՞:

Նա բռնեց ձեռքս և տարավ ինձ ծաղիկների մոտ: Իսկ ծաղիկները, ինչպես բոլոր խատուտիկները երեկոյան դեմ, արդեն փակվել էին, բռունցքի պես սեղմվել:

Իսկ փոքրիկս, այդ իսկական քաղաքաբնակը, անծանոթ նրանց վարքին, կարծել էր, թե նեղացել են իրենից:

Ես ժպտալով հանգստացրի նրան, տարիների հեռվում տեսնելով նույնանման մի փոքրիկի, որը վաղ առավոտյան տատիկից գաղտնի այգի սողոսկելով ու միշտ էլ թրջելով ոտքերը վաղորդյան շաղով, մինչև չորանար ցողը, կորչում էր իր հասակի կանաչների մեջ, հիանում էր նորանոր բացվող երիցուկներով, լվածաղիկներով, կակաչներով և ամենաշատը դեղին-դեղին խատուտիկներով...

Ես, շոյելով նրա շեկլիկ գանգուրները, համբուրեցի նրան.

— Իմ փոքրի՜կ, իմ անուշի՜կ, մի՛ վշտանա, նրանք չեն նեղացել, նրանք միայն քնել են, դու միայն սիրի՛ր, սիրի՛ր նրանց և պահպանի՛ր, ու նրանք շատ գոհ կլինեն:

Հայրն ասել է.

— Վերցնում ես պապիկի ճաշհացի կապոցը, բռնում ճամփան ու գնում: Ճամփան քեզ կտանի: Ճամփան քեզ կհանի հին կրհորների մոտ: Եղինջն ուտում է հին կրհորը: Աշնանը խաշամով վառվում են հին կրհորներն ու հանգչում: Մուտով կանցնես, կխորանաս անտառի մեջ: Կգնաս, կարմիր ցեխեր կան, մի ֆուտբոլի դաշտ տեղ, պիտի մի ամիս անձրև չեկած լինի, որ գնաս միջով, բայց որ մի քիչ էլ շաղ է դրած լինում, ցեխն ունցվում է, ջրիկանում ու ջուրը կարմրում: Ցեխերի վերևով է ճամփան անցնում, այդ ճամփան քեզ կտանի, կկանգնեցնի մի աղբյուրի մոտ: Որ ես փոքր էի, այդ աղբյուրը իր համար բխում էր ու գնում, իմ հոր փոքր ժամանակ էլ իր համար բխում էր ու գընում, շատ զուլալ ջուր ունի, հիմա իմ տեսած, քո պապի տեսած, իմ պապի տեսած էն գուշ աղբյուրը չի, որ անցորդը ծունկ տա մոտի սալ քարին ու խմի, սիրտը հովացնի: Ճամփեզրին, հաճարենու տակ Գիքորը պատերազմից չեկած իր Հարությունն եղբոր հիշատակին աղբյուր-հուշարձան է կառուցել, կհասնես աղբյուրին, նստարան կա, կնստես, կհանգստանաս: Չէ, աղբյուր-հուշարձանի մոտ մի քիչ կկանգնես, ինչպես հարգևոր մեծի մոտ լուռ ու խոնարհ կկանգնեն, հետո այդ հարգևոր մեծը, որ հիմա Հարութի աղբյուրն է, հենց Հարութն է, քեզ թույլ կտա, կնստես այդ տաքքար նստարանին, հետո բռով ջուր կառնես, կտաս երեսիդ, աղբյուրի աջ կողմում բաժակ կա, կվերցնես, ջուր կխմես, մեծի նման օխայ էլ կանես, չէ, ավելի լավ է բռով խմես, ամեն ինչ չեմ ասելու, օխայից հետո կնայես վերև, ծառերի արանքից լուսանցքի նման նեղ ու երկար երկինք է երևում, կնայես երկար, ուրիշ տեղ այդքան մոտիկ ու խոր երկինք չես տեսնի, հետո նորից կբռնես քո ճամփան ու կգնաս: Մի բլուր կա, Ջկռենու բլուր ենք ասում, այդտեղ զգույշ կգնաս, նապաստակներ կան, չվախենաս, պայտած չեն, խելոք են, քեզ էլ ճանաչում են, որ զարմացած նայեն, մի ամաչի, ասա, որ ապնի թոռն ես, գնում ես ապնի մոտ, բայց չասես՝ քաղաքից եմ եկել, թե չէ... Հետո քեզ համար կգնաս... Չսոլես, որ սուլում են ճանապարհ գնալիս, մանավանդ անտառի ճանապարհին, աղվեսը, նապաստակը, եղնիկը, թռչունները, բոլորը, թե չես վախենում՝ գայլ ու արջ էլ ասեմ, կարծում են, թե իրենցից վախենում են, դրա համար սուլելով, երգելով, մեկ-մեկ էլ գոռալով են գնում, ձայն են տալիս՝ Սարիբեկ, էհեհե՜յ, թե, տեսեք, տեսեք, Սարիբեկին ենք ման գալիս... Լսու՞մ ես, դու թե կարող ես՝ անտառի երգը, թռչունների երգը լսելով գնա... Գնաս, գնաս, կհասնես գիտե՞ս որտեղ, կհասնես ուղիղ այնտեղ, որ պիտի ջոկես քո ճամփան: Այդ ճամփաբաժնում հեքիաթի ծերունին չկա նստած, քո տակ էլ հրեղեն ձի չկա: Դու ես՝ քո ճամփան, ձեռքիդ էլ պապիկի բաժին հացը: Հիշիր որտեղ ենք հասել՝ մի բան պատմեմ. քո հորեղբայր Հրայրը որ փոքր է լինում, քո տարիքից էլ փոքր, քո տատիկը նրան տալիս է մի շիշ կաթ, թե տար տուր

# ԱՊԻ. ԷՀԵՀԵ՜Յ...

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

նանին, պինդ բռնիր, ասում է, որ չկոտրես: Քո հորեղբայրը տանում է, ձորի ջրի մոտ շիշը բացում, կաթը խմում, շիշը աղբյուրի տակ պահում, ողողում, հետո լցնում ջրով ու գալիս տուն: «Նանն ի՞նչ ասաց, Հրայր ջան» հարցնում է քո տատը: «Նանն ասաց՝ ապրես, զորանաս, մեծանաս, ապի դառնաս», պատասխանել է քո հորեղբայր Հրայրը: Իսկ քիչ հետո ասել է՝ մամա, վայ թե փորս շատ է ցավում... Հիմա դու էլ չնստես ու պապիկի բաժինն ուտես, մի տեղ քնես ու գաս, թե՝ ապին ասաց՝ ապրես... Դե գնա... Էն ճամփաբաժան տեղը, ջրբաժան տեղը մի քիչ կկանգնես, կնայես-կտեսնես ի՞նչ աշխարհ է՝ գեղեցիկ, կախարդական ու կբարձրանաս վեր, այնտեղից էլ ձայն կտաս՝ ապի, էհեհե՜յ... Ապին խոտ է հնձում, ձենդ կլսի, կկանգնի, ձեռքը կդնի ճակատին, կնայի քեզ ու կասի՝ հաջա՜ն, արի՜, մատա՛ղ, արի՜... Ու մնացածը դու գիտես, մեկ էլ քո ապին...

Պապիկի մոտ տանող ճամփան շատ սիրում է: Անտառ, ջուր, սար ու ձոր. Անտառի վերևում պետք է լինի կապույտ երկինք, կապույտ երկնքում պետք է լինի կարմիր արև: Կապույտ երկնքի ու կարմիր արևի տակ պետք է լինի մի ճանապարհ, որ բան ու գործը թողած, Արամին տանելու է պապիկի մոտ: Տանելու է զույգ հին կրհորների մոտով: Հայրն ասում էր՝ կրհորների տեղով: Բայց ինչու՞ տեղով: Կրհոր, կրի հոր: Օրինակ, մի անգամ պապիկից լսեց՝ ձին կապած է Մարտիրոսի տնատեղի վերևը: Ինչու՞ տնատեղ: Հարցրեց իմացավ: Մարտիրոսն ունեցել է տուն, կիսատ տուն: Մարտիրոսը գնացել է բանակ: Չի եկել: Տունը քանդվել է, դարձել տնատեղ: Ինչու՞ կրհորի տեղ: Ոչ մեկին չի հարցրել, ոչ մեկից չի լսել: Հա, հասկացավ տղան, կրհորի մոտերքը լիքը անձղափայտեր են, կրաքարեր են: Ինքը գիտի անձողը որն է: Վառված, այրված, փայտից մնացած ածուխը: Կրաքարն էլ գիտի: Կրհորը վառել են, լիքը վառել են, կրաքարերի վրա քանի օր կրակ են վառել, մինչև քարը ճաքճքել է, քարը այրվել է, քարը մոխրացել, կիր է դարձել: Դե, հիմա ամեն ինչ էլ կա. էլ ինչ կարիք կա թոնրից էլ խոր, մեծ կրհոր շինելու, գերան-գերան փայտ բերելու, սար ու ձոր ընկնելու, թե կրաքար եմ հավաքում, կիտում, սայլ է լծում, որ բերի, կրաքարը բարձի, տանի: Հա վառի, հա վառի, մինչև կրաքարը իր մեջի կիրը նվիրի քեզ:

Տղան երկար կանգնեց ու մտածեց մարդկանց մասին: Հետո շարունակեց ճամփան: Սա էլ հայրիկի ասած կարմիր ցեխը: Հա, սրա մասին էլ գիտի: Կավահողի հետ էս ցեխերից էլ են խառնել, հունցե՜լ, հունցե՜լ, կաղապարել, փռել արևի տակ, չորացրել: Հիմա գյուղում դեռ տներ կան, որ տանիքները կղմինդրապատ են: Հին տների տանիքների կղմինդրները մամռոտում են, մի տեսակ ծաղկում: Հիմա ով նոր տուն է կառուցում՝ շիֆերապատում է: Այդպես է:

Տղան երկար կանգնեց աղբյուր-հուշարձանի մոտ: Միշտ այնպես, ինչպես հայրն էր ասել: Հայրն ասում է, որ ինքը Հարութի էլ, քո պապիկի էլ, շատերի էլ

պատերազմ գնալը հիշում է: Ծառերի վերադարձը ավելի լավ է հիշում: Այս ի՞նչ բան էր. բոլորովին ծարավ չէր, բայց միանգամից ծարավն սկսեց խեղդել: Կանգնեց, լուռ կանգնեց մի քիչ, ապա խոնարհվեց, ջուր խմեց, նայեց վերև: Իրոք որ՝ ծառերի կատարների բաց արանքից երկինքը լուսանցք էր դարձել՝ խոր, մաքուր ու մոտիկ:

Այսպես գնա՜ց, գնա՜ց Արամը՝ մտածելով ամեն ինչի մասին: Ծառերն են կռիվ գնացել, շատերը չկան, պապն էլ է գնացել, հիմա պապը վերևներում խոտ է հնձում: Ուրեմն իր նման քանի՜-քանի երեխա պապ չունի:

Հասավ Զկռենու բլրին: Ինչու՞ հենց զկռենու: Լիքը հաճարենիներ, կաղնիներ, հացենիներ...Հզոր ծառեր: Պարզապես ընդամենը մի զկռենի կա, միայն մի զկռենի անտառային մեծ զանգվածի մեջ: Այստեղ լինում են նապաստակներ: Բայց ա՜յ քեզ բան. խոտերի միջով ի՞նչ գեղեցիկ աղվես է անցնում: Բոլորովին էլ խորամանկ չէ: «Աղվե՜ս» ձայն տվեց տղան: Ուզում էր ասել, որ քեզ տեսա: Գոնե դու տես, որ ես քեզ տեսա: Աղվեսը տեղնուտեղը որսաց տղայի ձայնը, տեսավ տղան խելոք է, ձեռքին ունի էն վերևների խոտհարքներում հունձ անող հնձվորի համար տարվող ճաշհաց, մի պահ էնպես բարեկամաբար նայեց ու գնաց իր ճամփան...

Արամը հասավ հայրիկի ասած ճամփաբաժան գիծը: Եթե հեքիաթ լիներ, ուրեմն ինքը հրեղեն ձի կունենար: Այստեղ նստած կլիներ մի ալևոր ծերունի: Ծերունին կասեր՝ այս ճամփան գնալը, կորելը հեշտ է, իսկ այս ճամփով գնացողը, ո՜վ խենթ, չի վերադառնում: Հիմա՝ տիեզերքի ճամփով: Գյուղում մի մեծ նանի կա՝ խաչքար երեսով, խզմզված ձեռքերով, տիեզերքի ճամփին էլ է աստծո ճամփա ասում: Հեքիաթ չի, ոչ էլ ինքը հեքիաթի փոքրիկ հերոս է, բայց ծոցում ունի ձիու մազեր: Սև, կարմիր, սպիտակ: Ունի՞, թե չունի: Որ փոքր էր, գյուղ էր գալիս, միշտ ունենում էր: Հիմա մեծացել է, դարձել տասնմեկ տարեկան տղա, արդեն սկսել է արկածային գրքեր կլանել: Դե, քաղաքում էդպես է: Ուրիշ ի՞նչ անես: Բայց գյուղում կարդալ չի լինում: Արևոտ օրերին մտածում ես անտառի ու գետի մասին, անձրևոտ օրերին պատուհանից դուրս ես նայում, կայծակ է, շրմփան ու խաղաղ անձրև է: Օրերը թռած անցնում են: Գյուղում լավ մտածում ես քաղաքում կարդացած գրքերի հերոսների մասին: Ինչու՞ վախկոտներին չի կարողանում հիշել, միայն հիշում է նրանց, ովքեր համարձակ են, ճշտախոս, ընկերասեր, ազնիվ: Դե, ինքը հո գրքի հերոս չի՞, բայց որ մի լավ բան է անում, թեկուզ ձի է նստում ու թամբին ամուր կպած քշած գնում, երբ իրեն ասում են՝ ապրես, լոռեցու հոտ ես, է՜... իրեն մի տեսակ հերոս է զգում: Էս ճամփով փոքր ժամանակ հայրը իրեն տարել է: Հիմա առաջին անգամ է մենակ գնում: Որ մենակ ես ճամփա գնում, չորս կողմդ ավելի ուշադիր ես նայում, ուզում ես ամեն ինչ էլ տեսնել: Բայց որ հա՜ կանգնես, նայես՝ ոնց որ մանկական պատկերասրահի նկարներ, հա կնայես: Բայց դե պապիկը ճաշհացի է սպասում, հունձ անող մարդը շուտ է քաղցածանում:

— Եղնի՜կը, եղնի՜կը,— հանկարծ այնպես ճչաց տղան, որ թվաց, թե մանկական պատկերասրահից մի եղնիկ է փախչում, պոկվել է նկարից ու փախչում է:

Ափսոս, մոտը ոչ ոք չկար, որ իր հետ տեսներ, իր հետ հրճվեր: Այ քեզ հրա՜շք: Իրոք որ անտառի հրաշք: Բայց ինչու՞ շուտ կորավ: Իրիկունը որ ասի՝ աղվես եմ տեսել, եղնիկ եմ տեսել, չեն հավատա:

Տղան գնա՜ց, գնա՜ց, անտառից դուրս եկավ, մտավ կանաչ խոտհարքները, շնչեց ծաղիկների բույրը: Քիչ էլ որ գնա, կհասնի պապիկին: Չէ, չի ուշացել: Ճակատին էլ շաղիկ-շաղիկ քրտինք կա:

— Մեծ հայրիկ, հե՜յ...

Ձայնը պապիկին չհասավ:

— Մեծ հայրիկ, հե՜յ...

Արձագանք չեղավ: Մեծ հայրիկ, որ ասում է՝ ձայնը լավ չի գնում: Այ, հայրիկը ճիշտ է կանչում՝ ապի, էհեհե՜յ... Լավ կլիներ, գնար, միանգամից կանգներ ձորի գլխին, ապին ներքևից շրջվեր, բարձրանար, տեսներ իրեն ու զարմանար...

— Ապի, հե՜յ...

Ձայնը գնում էր, իսկ տղան մտածում էր, թե քանի շեշտ ու երկարացման նշան դրեց: Իսկ եթե մի անգամ էլ ձայն տա այսպես՝ ա՜յ ապի, էհեհեհե՜յ... Չէ, էհեհեհեյ կանչելը շատ է պարզ, արևոտ օրվա համար: Իսկ հիմա արևոտ օր է: Քո հոր ճամփան, քո պապի ճամփան, էս գյուղի հին ու նոր մարդկանց ճամփան բռնել ու գնում ես, էլ ինչու՞ ես ձայն տալիս...

Խոր անտառներից բաժանված ու սարի խոտհարքներում մնացած մի մեծ կաղնի իր հովանու տակ մի քիչ թուփ-մուփ է հավաքել: Ու ընկերներից բաժանված էդ կաղնին ինչ զուլալ աղբյուր է պահում: Էդպես էլ ասում են՝ աղբյուրի կաղնի: Ջուրը ասես կաղնու խոր արմատներից է բխում: Պապիկը այնտեղ կլինի: Չէ, ինչու՞ գնա կանգնի: Ճաշհացը կդնի ձորի դեռ թաց խոտի տակ, կվերցնի ջրամանը, կգնա ջուր էլ կբերի, հացը կբացի ծառի շվաքում, կնայի պապիկի քրտնած երեսին ու մեջքին կպած թաց շապիկին ու կկանչի հացի: Պապիկը իրեն ի՞նչ է ասելու: Ասելու է.

— Եկա՞ր, այ շա՜տ ապրես, հոգնած կլինես, դե, արի նստենք հացի...

Տեսավ պապիկին ու սիրտը թռավ եղնիկի նման:

Պապը գրկեց տղային, և Արամը մտածեց շուտ մեծանալու մասին:

— Արևը մայր է մտնում, շուտ ճաշվահացը ուտենք ու գնանք տուն, իրիկվահացին էլ հասնենք:

Արամը նայեց պապին. էս ի՞նչ է ասում, Արամը նայեց լեռների ետևում մնացած կես արևին: Հասկացավ, ամաչեց, ճաշհացն ուշացրել է... էս ինչի՞ ուշացրեց:

# Հարի՜, հարի՜, խնոցի

ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆ

Հենց որ ծլեց թավիշ խոտը,
Տոթը բռնեց դաշտ ու դուրան.
Մի առավոտ քուչն ու հոտը
Ցայլա ելան շարան-շարան:
Եվ քուչի հետ, բեռ ու բարձով,
Գառ ու մաքով, ուլ ու այծով
Ցայլա հասավ Օսան նանը:
Հասավ, զարկեց իր վրանը
Գլթան կաթնով աղբյուրի մոտ
Մարգուների մեջ անուշահոտ:

Հետո եկավ Զոզան նանը՝
Գյուղի դրկից-հարևանը.
Կողքին զարկեց իր վրանը:
Դարձան իրար մաղթանք արին.
— Առատ ու շեն լինի տարին...

— Ի՞նչ ես ասում, կաթ փոխ չանե՞նք.
Հերթով հարենք, կարագ հանենք.
Մի շաբաթ՝ ես, մի շաբաթ՝ դու.
Մեկ չլինենք, լինենք երկու:

Ինչպես ասին, այնպես արին.
Ամեն օրը, ճրագվառին,
Մեկ Օսանն էր բերում փոխը,
Մեկ Զոզանն էր բերում փոխը.
Չափ-ճիպոտով արդար չափում,
Լցնում կճուճն հարևանի.
— Թող աստված մեկդ հազա՞ր անի...

Բայց մի օր էլ, Օսան նանը,
Երբ ձեռքն առավ կաթնամանը,
Որ, էն է հա, բերեր փոխը,
Չար սատանան մտավ կողը.
«Աստվա՛ծ,— ասաց,— մեղք չհաշվես...»
Ասաց-չասաց՝ սերը քաշեց...

Եկավ հերթը Զոզան նանի:
Ոտը կոտրեր չար սատանի.
«Եղա՜ծն ինչ է՝ մի գդալ սեր:
Տե՛ր, աչքդ՝ փակ, դու չես տեսել»:
Ասաց, քաշեց գդալ-գդալ,
Պուլիկն ածեց ու դրեց վար:

Այսպես, երկու դրկից նաներ,
Թև ու թիկունք հարևաններ,
Նախ դողդողդ, տափուկ-տափուկ,
Ապա քիչ-քիչ սիրտ առնելով,
Խաղում էին աչքակապուկ:

Թույլ ու նալա՞թ չար սատանին,
Որ չի տալիս Օսան նանին:

Մեկ էլ հանկարծ միտքը ծռեց,
Կաթը ջրեց.
«Ի՞նչ կիմանա, կաթը կաթ է,
Համ էլ էսքանն իրեն շատ է,
Շատն ինձ է պետք ու հարկավոր.
Էգուց մի գյուղ հարսանքավոր
Զարկելու են դուռը մեր տան:
Ո՞նց էղթանին պատասխան տամ...»

Ոտը կոտրեր չար սատանի,
Եկավ կպավ Զոզան նանին.
— Չափը չափ է, օրենքն՝ օրենք,
Թե ջրել է, մենք էլ ջրենք...

Օրհնվի՜ թող Բլթան ջուրը.
Բլթբլթում է, լցվում գուռը,
Լցվում, գնում, բայց կա էլի...
Օրհնվի՜ հա Բլթան ջուրը...
Եվ օրէօր, բուռ-բուռ, կուց-կուց,
Մի չափ կաթը դարձավ երկուս,
Երկու չափը երեք դարձավ,
Երեք չափը չորեք դարձավ,
Չորսն էլ գուցե քառասուն դառնար,
Թե հնարքով,
Գիր-բժժանքով,
Ջուրն էլ մերվեր, մածուն դառնար...

Է՜հ, ջրում են, մերում-շարում:
Բայց մի տեսնենք ո՞նց են հարում...
Զը՛մփ հա զրը՜մփ,
Զը՛մփ հա զրը՜մփ...
Զմփացնում է Օսան նանը,
Զմփացնում է մածնաթանը,
Տանում-բերում, բերում-տանում
Ու նույն չափով,
Ենչով-թափով,
Տաղ է կապում ու դնդնում.
— Հարի՜, հարի՜, խնոցի՛,
Գնա՜, արի՜, խնոցի՛,
Կարագ հանի, շո՜ւտ հանի,
Մեկի տեղ չորս գո՜ւնդ հանի,
Մի գունդ գնդեմ տամ Սոսին,
Մի գունդ էլ տամ Վարոսին,
Մի գունդ էլ տամ Մանասին,
Մի գունդ էլ տամ Վարազին,
Փեսոն որ գա՝ շոռ կտամ,
Թե նազ անի՝ չոռ կտամ,
Այ փը՛շտ, կասեմ, դե՜ն կորի,
Թող կարագս կոլոլվի...
Հարի՜, հարի՜ խնոցի՛,
Գնա՜, արի՜, խնոցի՛...

Զը՛մփ հա զրը՜մփ,
Զը՛մփ հա զրը՜մփ...
Զմփացնում է, բերում-տանում,
Փուքն է թողնում, մատնահարում
Ու ներս նայում արավ-ծարավ:
Բայց, չէ՜ եկավ կեսօր դառավ,
Դեռ վերը՝ քափ, տակը թան է:
Զարմանում է Օսան նանը:

Վաղն էլ այս նույն լողլող թանը
Կզմփացնի Զոզան նանը...

Եվ «խնոցի» խաղը ձգվեց,
Եկավ հասավ աշնան գլուխ:
Ե՞ն մնաս, սա՛ր: Եվ ծանրումեծ,
Բեռ ու բարձով դառնում են գյուղ:
Սայլն իջնում է գիլ ու գլոր:
Սայլի վրա, օրոր-շորոր,
Մեջքը՝ մեջքին, ետուառաջ,
Մեկը մեկին թիկունք դառած,
Սարի բերք ու բարիքն առած,
Տուն են դառնում երկու նաներ՝
Լեն-նեղ օրվա հարևաններ:

Ճռոցի տակ, ճլվլոցի,
Փոր ու փոշման, ձեռնիծոցի՝
Մտմտում են երկու պառավ.
— Չէ՜, էս տարին պատիժ դառավ.
Մեր շահն արդյոք
Ե՞ն եղավ լուկ,
Որ զուր-իզուր
Ջուր կրեցինք հազար մի դույլ,
Հազար անգամ հազար-հազար
Տարանք-բերինք փուչ խնոցին,
Հազար մի գիրկ ցախ ու մաղառ,
Ծան ու աթար տվինք բոցին,
Հազար պղինձ մրին տվինք,
Հազար կուց աղ ջրին տվինք,
Աղն էլ կորավ,
Ծախն էլ կորավ,
Ծանն էլ կորավ,
Թանն էլ կորավ,
Ջուր մեր ջանքն ու ջանն էլ կորավ.
Կորա՜վ գնաց կուց-կուց, բուռ-բուռ՝
Վստահությունն, ամոթ-արուռ,
Սեր ու հավատ,
Խեր-բարաքյաթ...

Հարի՜, հարի՜, խնոցի՛,
Գնա՜, արի՜, խնոցի՛,
Էս ի՞նչ արիր, խնոցի՛...

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ



# ԱՂՋԻԿԸ ՈՒՐԻՇ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՉՈՒՆԻ



Արդեն ոչ ոքի չեն զարմացնում ավանդական համարվող տղամարդկային մասնագիտության տեր կանայք: Նրանք հիմա և՛ օդաչուներ են, և՛ նավապետներ, նույնիսկ՝ տիեզերագնաց:

Բայց կին ցլամարտի՞կ...

Ավելի ճիշտ ոչ թե կին, այլ տասնյոթամյա աղջիկ: Նրա անունը Մարիբել Աթենսար է: «Լաս-Վենտաս» արենայի տերերը չսխալվեցին իրենց հաշվարկներում. 28 հազար հանդիսատես էին եկել տեսնելու, թե ինչպես է ցուլը պոզահարում դեռատի աղջկան: Ցլամարտի սիրահարները հոտնկայս ծափահարում էին խիզախ «ցլամարտուհուն» և պահանջում նրան պարգևատրել՝ սպանված ցուլի ականջը:

Մարիբելը նվաճեց փառք և դրամ: Նրա մասին անդադար գրում էին իսպանական և արտասահմանյան թերթերն ու ամսագրերը: Միաժամանակ նրա բախտը բերում էր. ցլամարտերում միշտ հաղթող էր դուրս գալիս՝ ստանալով միայն մի քանի կապտուկ ու այտուց: Սակայն կատաղած ցուլի հետ մենամարտը ոչ թե կենաց, այլ մահու խաղ է: «Վաղ թե ուշ դա տեղի կունենա,— ասում էր Մարիբելը:— Միայն հույս ունեմ, որ վերքն այնքան էլ ծանր չի լինի»:

Ու մի անգամ, Բարսելոնայում ելույթի ժամանակ, գազազած ցուլի եղջյուրները հասան աղջկան...

Այժմ Մարիբելը բուժվում է հիվանդանոցում: Աղջըկա ապագան մշուշապատ է. կկարողանա՞, կհամարձակվի՞ արդյոք նա նորից հանդես գալ ցլամարտում: Իսկ եթե ոչ, ինչպիսի՞ն կլինի նրա ճակատագիրը: Նա հիանալի տիրապետում էր սուսերին ու կարմիր թիկնոցին և այլ մասնագիտություն չունի:

# ՓԱՓԱԶՈՎՆԵՐԸ ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ ԵՆ ՇՈՒՐՋԵՐԿՐՅԱ ԺԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅԱՆ

Բուլղար հետազոտողներ Յուլիա և Դոնչո Փափազովները նման չեն սովորական նավագնացների: Նըրանք ծով են դուրս եկել առագաստավոր փրկամակույկով, իրենց ասես նավաբեկյալների վիճակի մեջ դրած: Կողմնորոշվել են կողմնացույցով ու աստղերով, սնվել հիմնականում պլանկտոններով[1]: Փափազովները որոշեցին ապացուցել, որ մարդ կարող է և պարտավոր է գոյատևել նման ծանր պայմաններում:

Իրենց առաջին ճանապարհորդությունը Յուլիա և Դոնչո Փափազովները կատարեցին 1972 թվականին. 26 օրում նրանք մակույկով կտրեցին անցան Սև ծովը: 1974 թվականին նրանք հաղթահարեցին Ատլանտյան օվկիանոսը՝ Ջիբրալթարից մինչև Կուբա, և այդ վտանգավոր և արկածահարուստ ճամփորդության մասին գրեցին իրենց «Օվկիանոսով՝ առագաստի ներքո» գրքում:



Գիրքը թարգմանվել է ռուսերեն, հրատարակվել ՀամԼԿԵՄ ԿԿ «Մոլոդայա գվարդիա» հրատարակչության կողմից:

1976 թվականին բուլղար հետազոտողներն արդեն նոր երթուղով նավարկեցին. կտրեցին անցան Խաղաղ օվկիանոսը: Իսկ հիմա խիզախ նավագնացները պատրաստվում են շուրջերկրյա ճանապարհորդության:

---

[1] Պլանկտոն — ջրային կենդանական և բուսական պարզ օրգանիզմների ամբողջություն:



# ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՉ ՈՔԻ ՀԵՇՏ ՉԻ ՏՐՎՈՒՄ

*ՀԱԿՈԲ ԳՈՒՐՈՒՆՅԱՆ*

Մի աշնանային օր, երբ շագանակը նոր էր սկսել թափվել, որսորդ Հենդոն գնում է անտառ և շագանակ ուտելով խորանում դեպի լեռան այն լանջը, որտեղ մարդու ոտք համարյա չէր դիպել:

Մի բացատում շագանակենու մի հսկա ծառի տակ նա կանգ է առնում ու նայում ծառին.

— Ա՜յ շագանակենի, ի՜նչ լավ պտղակալել ես, ապրե՛ս, ծա՛ռ:

Ապա նայում է իր դիմաց փռված թփերին ու դրանց արանքներում ի՞նչ է տեսնում... Երեք խոշոր քոթոթներ խաղում են իրար հետ: Հենդոյի աչքերը շլվում են: Նա հարմար դիրքի էր, կարող էր երկար նայել ու հիանալ քոթոթների խաղերով, բայց հիանալ չի ուզում, հրացանը մեկնում է, քոթոթներից մեկի վրա կրակում...

Քոթոթի գլորվելն ու հսկայամարմին մոր գոռգոռալով հայտնվելը մեկ է լինում: Այնքան անսպասելի էր մոր հայտնվելը, որ երբ Հենդոն տեսնում է նրան (մի քանի քայլ էր արջին իրենից բաժանում), էլ ի՞նչ կրակել, հրացանը ընկնում է ձեռքից, ժամանակ չի կորցնում, որ վերցնի, կայծակի արագությամբ վազում է դեպի մոտակա ծառը, ճյուղերից բռնում, որ ելնի ծառը, արջը հասնում ու թաթով ուժեղ մի հարված է իջեցնում Հենդոյի փափուկ տեղին, այնպես, որ շալվարի հետ... ազդրի կեսն էլ է պոկվում: Հենդոն կտրիճ տղամարդ էր, ուժեղ մկաններով, արագ մագլցում է ծառն ու կյանքը փրկում:

Մայր արջը Հենդոյի ետևից ծառ չի բարձրանում, այլ փրփրալով պտտվում է ծառի շուրջը, գոռգոռում, թքում դեպի մարդը, հետո, ողբ ու լացով վազում է դեպի սպանված քոթոթը, արցունք է, որ թափում է քոթոթի համար:

Մայր արջը մեկ էլ նկատում է հրացանը, վերցնում է ու գոռգոռալով խփում մոտակա մեծ քարին. մեկ, երկու, երեք ու... կտոր-կտոր անում, նետում ձորը:

Հենդոն վանական խորամանկությունների դիմելով, մի կերպ, պատառոտված շորերով ու ազդրով, արյունաքամ, հասնում է գյուղ: Որդիներն իսկույն նրան տանում են քաղաքի հիվանդանոցն, ուր երկար բուժվում է նա:

Առողջանում է, գյուղ գալիս: Դրանից հետո նա ձեռքն այլևս հրացան չի առնում: Ամեն անտառ գնալիս հիշում է մայր արջի ողբը, որը կարծես ասում էր նրան. մարդ, անտառում արջն էլ երջանիկ է իր քոթոթներով: Երջանկությունը ոչ ոքի հեշտ չի տրվում, ոչ ոքի չպետք է իր երջանկությունից զրկել:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ 8. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՄԵԼԻՆԵ ԷԴԻՆՋԵՄԻԼՅԱՆԻ, Կոչոյանի անվան դպր., 8-րդ դաս.



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։ Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96։

ՎՖ 03156։ Պատվեր 1301։ Տպաքանակ 52300։ Տպ. 3 մամ.։
Հանձնված է արտադրության 4/VI 1979 թ.։
Ստորագրված է տպագրության 18/VII 1979 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։



# ԱՆՏԻԿ ԶՐՈՒՅՑՆԵՐ

## ՀԱՎԱՍԱՐ ՎԻՃԱԿ

Սոկրատեսն ու մի մեծահարուստ ճամփա էին գնում։ Նրանք իմացան, որ մոտերքում ավազակներ են հայտնվել։

— Եթե նրանք ինձ ճանաչեն,— ասաց մեծահարուստը,— ես կորած եմ։

— Իսկ ես կորած եմ, եթե նրանք ինձ չճանաչեն,— վրա բերեց Սոկրատեսը։

## ԼԱՎ ՄԱՐԴ ՃԱՆԱՉԵԼՈՒ ՉԱՓԱՆԻՇԸ



Սոկրատեսը մի քանի ծանոթների հրավիրեց տուն։ Նրա բարի կինը՝ Քսանթիպան, նեղվեց, որ հյուրասիրությունը համեստ է լինելու։

Եվ Սոկրատեսն ասաց.

— Հանգի՛ստ կաց։ Եթե այդ մարդիկ լավն են և չափավոր՝ բարեսրտորեն կընդունեն այն, ինչ կմատուցես... Իսկ եթե հիմար են ու սանձարձակ՝ չարժե, որ մտահոգվես...

## ԻՆՉՆ Է ՇԱՏ ԸՆՏՐԵԼԻ

Մի մարդ, տեսնելով, որ Սոկրատեսը սնվում է արմտիքներով, ասաց.

— Եթե դու ծառայության անցնես մեր թագավորի մոտ՝ ստիպված չես լինի արմտիքներով սնվել։

Փիլիսոփան պատասխանեց.

— Իսկ եթե դու կարողանայիր բավարարվել արմտիքներով, ստիպված չէիր լինի ծառայել թագավորին։

## ԻՆՉՊԵՍ ՄԵՌՆԵԼ




Սոկրատեսը քննադատում էր բռնապետությունը, և նրան դատապարտեցին մահվան. նա պետք է թույն խմեր։

Երբ նրան տանում էին մահապատժի, մի կին, որը Սոկրատեսի ջերմեռանդ երկրպագուներից էր, բացականչեց.

— Ա՜խ, նրանք քեզ տանում են սպանելու, երբ դու անմեղ ես։ Անարդար է քո մահը։

Փիլիսոփան պատասխանեց.

— Օ՜, հիմար կին, մի՞թե կնախընտրեիր, որ մեղավոր լինեի, և մահս լիներ արդար ու մեռնեի որպես հանցագործ։

## ԶՈՐԱՎԱՐՆ ՈՒ ՓԻԼԻՍՈՓԱՆ

Դիոգենես Սինոպացին ժխտում էր քաղաքակրթությունը և իրեն անվանում էր աշխարհի քաղաքացի։ Արտահայտելով իր անտարբերությունը կյանքի բոլոր տեսակի հարմարությունների հանդեպ՝ ապրում էր տակառի մեջ։

Մի անգամ Ալեքսանդր Մակեդոնացին դիմեց նրան.

— Ասա՛, ո՛վ իմաստուն, ի՞նչ կցանկանայիր... Ես կհրամայեմ կատարել քո ամեն մի ցանկությունը։

Եվ փիլիսոփան ասաց.

— Մի քիչ ա՛յն կողմ կանգնիր, դու փակում ես արևի ճամփան։

## ԴԻՈԳԵՆԵՍԻ ԼԱՊՏԵՐԸ

Մի անգամ Դիոգենեսը օրը ցերեկով վառել էր լապտերն ու շրջում էր Աթենքի փողոցներում։ Նրան հարցրին, թե այդ ի՞նչ է անում, և փիլիսոփան պատասխանեց.
— Մարդ եմ փնտրում։

## ԱՄԵՆԻՑ ՎՏԱՆԳԱՎՈՐԸ



Դիոգենեսին հարցրին.
— Ո՞ր կենդանու խայթն է ամենից վտանգավորը։
Եվ փիլիսոփան պատասխանեց.
— Գիշատիչներից՝ զրպարտիչինը, իսկ ընտանիներից՝ շողոքորթինը։

## ԶԳՈՒՇՈՒԹՅՈՒՆ

Տեսնելով, որ մի մարդ ոչ մի կերպ չի կարողանում նետով հարվածել նշանակետին՝ Դիոգենեսը գնաց և կանգնեց թիրախի մոտ։ Եվ նրան հարցրին.
— Ինչո՞ւ այդպես վարվեցիր։
Եվ փիլիսոփան պատասխանեց.
— Որպեսզի հանկարծ նետը ինձ չդիպչի։

## ԱՐԻՍՏՈՏԵԼԻ ԿԱՐԾԻՔՈՎ




Հին Հունաստանի մեծ փիլիսոփա և գիտնական, Պլատոնի աշակերտ ու նշանավոր զորավար Ալեքսանդր Մակեդոնացու ուսուցիչ Արիստոտելը մի անգամ ասաց.
— Խելացի մարդը միշտ համաձայնում է մեկ ուրիշ խելացի մարդու հետ, իսկ հիմարը սովորաբար չի համաձայնում ո՛չ խելացիի, ո՛չ էլ իր նման հիմարի հետ։ Դրա նմանությամբ կարելի է ասել, որ բոլոր ուղիղ գծերը համընկնում են իրար, իսկ ծուռ գծերը նման չեն ո՛չ մյուս ծուռ գծերին և ո՛չ էլ ուղիղներին։

## ՀԱՏԿԳՈՒԵԼ

Հին Հունաստանի նշանավոր փիլիսոփա Անաքսագորասը, որ Աթենքի ստրատեգ Պերիկլեսի ուսուցիչն էր, ընկավ ծայր աղքատության մեջ և որոշեց իրեն մատնել սովամահության։ Իմանալով այդ՝ Աթենքի կառավարության գլուխը եկավ ուսուցչի մոտ և ընկրնեց թախանձել, որ նա հրաժարվի իր մտադրությունից։
— Քո խորհուրդները դեռևս անհրաժեշտ են ինձ,— ասում էր Պերիկլեսը։
Եվ փիլիսոփան պատասխանեց.
— Նա, ով կարիք ունի ճրագի լույսի, չի մոռանում յուղ լցնել ճրագի մեջ։

## ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ՉԻ ՍԽԱԼՎՈՒՄ



Հին Հունաստանի հռչակավոր փիլիսոփա Զենոնի աշակերտներից մեկը չափազանց շատախոս էր։ Եվ մի անգամ մեծ փիլիսոփան ասաց նրան.
— Մենք ունենք երկու ականջ և մի բերան, որպեսզի շատ լսենք, և որքան հնարավոր է, քիչ խոսենք։

## ԻՍԿԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ

Մի անգամ Հին Աթենքի փառաբանված իմաստուն Սոլոնի դուռը բախեցին։
— Ո՞վ է,— հարցրեց Սոլոնը։
— Օտարերկրացի եմ, անունս Անախարսիս է, սկյութացիների թագավորն եմ։
— Ի՞նչ ես ուզում, Անախարսի՛ս,— զայրացավ Սոլոնը։
— Ես հեռվից եմ եկել և ուզում եմ բարեկամանալ քեզ հետ։
— Բարեկամություն հարկավոր է հաստատել տանը նստած և ոչ թե օտար երկրներում։
— Ես քեզ հետ համաձայն եմ, դրա համար էլ եկել եմ քո տունը։
— Ինչպե՞ս թե՝ դրա համար,— զարմացավ Սոլոնը։
— Որովհետև դու հիմա նստած ես տանը, ուրեմն բարեկամություն կնքիր ինձ հետ։
Սոլոնին դուր եկավ հյուրի հնարամտությունը, և նա սիրով ներս հրավիրեց Անախարսիսին, և նրանք դարձան մտերիմ բարեկամներ։

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

## ՃԱՆԱՊԱՐՀ ԴԵՊԻ ԿԱՏԱՐԵԼՈՒԹՅՈՒՆ

Հին Հունաստանի փիլիսոփա Թալես Միլետացուն հարցրին.
— Ինչպե՞ս կարելի է դառնալ ավելի լավ և ավելի առաքինի։
Եվ փիլիսոփան պատասխանեց.
— Շատ պարզ։ Մի՛ արիր այն, ինչի համար կշտամբում ես ուրիշներին։

## ԲԱՆԱՍՏԵՂԾՆ ՈՒ ԲՌՆԱՊԵՏԸ

Հին Հունաստանի բանաստեղծ Ֆիլոքսենեսը համարձակվեց քննադատել Սիրակուզայի բռնապետ Դիոնիսիոսի պոեմը։ Դրա համար նրան աքսորեցին քարհանքերը՝ տաժանակրության։ Որոշ ժամանակ անց բռնապետը, որ սիրում էր ազատ ժամանակը տրամադրել ողբերգություններ, երգեր ու ոտանավորներ հորինելուն, ետ կանչեց Ֆիլոքսենեսին և կարդաց իր նոր բանաստեղծությունները։
Երբ բռնապետն ավարտեց իր արտասանությունը, բանաստեղծն ուղղվեց դեպի դուռը։
— Այդ ու՞ր,— զարմացավ Դիոնիսիոսը։
Եվ բանաստեղծը պատասխանեց.
— Քարհանքեր։

## ԿՐԿՆԱԿԻ ՎԱՐՁ

Հին հռոմեացի հրապարակախոս Իսոկրատեսին շաղակրատի մեկը խնդրեց հռետորական արվեստի դասեր տալ իրեն։ Իսոկրատեսը համաձայնեց, բայց ասաց, որ ուսուցման համար նրանից կրկնակի վարձ կվերցնի։
— Ինչու՞ կրկնակի,— զարմացավ շաղակրատը։
Եվ փիլիսոփան պատասխանեց.
— Որովհետև քեզ նախ լռել պիտի սովորեցնեմ, ապա միայն՝ խոսել։

## ԿԱՏՈՆ ԱՎԱԳԻ ՀԱՄԵՍՏՈՒԹՅՈՒՆԸ

Հին հռոմեական արձակի հիմնադիր ու պետական գործիչ Կատոն Ավագին հարցրին.
— Մի՞թե զայրացուցիչ չէ, որ մինչև հիմա Հռոմում քո հուշարձանը չի կանգնեցվել։
Կատոն Ավագը բացականչեց.
— Ես կգերադասեի, որպեսզի չասեին՝ «Ինչու՞ են արձան կանգնեցրել Կատոնին»։

## ԶՐՈՒՅՑ ՃՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ



Հռոմների զորավար Կրեսոսը՝ շքեղ հագուստներով պճնված, դիմեց Աթենքի պետական ու քաղաքական գործիչ Սոլոնին.
— Արդյոք երբևէ տեսե՞լ ես ավելի շքեղ ու հոյակապ բան։
Եվ Սոլոնը պատասխանեց.
— Աքաղաղներ, փասիաններ ու սիրամարգեր։ Չէ՞ որ նրանք շողշողում են բնական ու անզուգական գույներով։

*Հավաքեց ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑԸ*

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ԱՆԱՊԱՏԱՅԻՆ ԱՂՎԵՍԻԿ ՖԵՆԵԿԸ

Ֆենեկները, որոնք նաև անապատային կամ ավազուտային աղվեսներ են կոչվում, տարածված են Հյուսիսային Աֆրիկայի անապատներում, Արաբական և Սինայի թերակղզիներում: Աղվեսներից ամենափոքրն են և ամենաերկարականջը: Մարմնի երկարությունը քթի ծայրից մինչև պոչի հիմքը ընդամենը 35—40 սմ է, իսկ ականջների երկարությունը՝ 15 սմ: Ականջակոնքերը արյունատար անոթներով պատած յուրօրինակ «ռադիատորներ» լինեն կարծես, որոնք շոգ անապատում ուղեղը պաշտպանում են արևահարությունից: Բացի այդ մեծ ականջները լավ են կենտրոնացնում ձայները, իսկ այդ շատ կարևոր է այնպիսի գիշերային գիշատչի համար, ինչպիսին ֆենեկն է:

Սահարայում ապրող գիշատիչների տասնչորս տեսակներից միայն ֆենեկն է, որ կարողանում է ջրից հեռու ապրել: Փոքրիկ աղվեսիկներին կարելի է հանդիպել օազիսներից և ջրհորներից հեռու վայրերում: Արևի կիզիչ ճառագայթներից պաշտպանվելով, նրանք որսի են դուրս գալիս գիշերը, իսկ ցերեկն անցկացնում են բներում: Ֆենեկը հիանալի փորել գիտե, ասում են, որ արագ փորելով 24 ժամ վայրկենապես կարող է անհայտանալ: Ֆենեկի բները շատ խորը չեն՝ մոտ մեկ մետր ավազի տակ, բայց երկարությունը տասը մետրից ավելի է լինում: Ավազի վերին շերտը տաքանում է երբեմն մինչև 70°-ից ավելի, բայց մեկ տասնյակ սանտիմետր խորքում արդեն համեմատաբար զով է: Ֆենեկն աշխատում է իր բույնը փորել այնպիսի տեղ, որի խորքում կարելի է խոնավ ավազի հանդիպել:

Թվում է, թե գիշատիչը անապատում քաղցած կմնա, բայց ախր ավազուտային աղվեսիկին այնքան էլ շատ բան հարկավոր չէ: Քարերի տակ, փոսերում, անապատային բույսերի չոր ոլորներում ֆենեկը միշտ էլ միջատներ, սարդեր, կարիճներ, երբեմն մողես կամ օձ, իսկ եթե բախտը բանի՝ անապատային կրծող կգտնի: Անզգույշ թռչուն բռնելու կամ էլ ձվերն ուտելու համար բույնը քանդելու առիթն էլ ձեռքից բաց չի թողնի:

Աղվեսիկի ամուսնական շրջանն սկսվում է հունվարին, իսկ մարտին-ապրիլին էգը երկուսից-հինգ ձագ է բերում: Որոշ ժամանակ նա բնում է մնում, իսկ ուտելիքը արուն է հայթայթում: Շուտով էգն էլ է դուրս գալիս բնից և երկուսով միասին փոքրիկներին ամբողջ օրը համեղ պատառներ են բերում:

Ֆենեկների թշնամիները՝ բորենիները, շնագայլերը և ուրուրներն են: Բայց սուր լսողությունը և գերազանց տեսողությունը, նրանց հիանալի պաշտպանում են գիշատիչներից: Բացի այդ նա աղվեսի մյուս տեսակներից պակաս խորամանկը չէ: Արաբներն ասում են. «Ֆենեկը երբ երկու շուն է տեսնում, սկսում է խաղալ նրանց հետ, երեք շունը նրա մոտ ծաղրական ժպիտ են առաջացնում, չորսը կստիպեն նրան վազվզել, հինգը փախուստի կմատնեն, իսկ վեց շունը միասին նրան կարող են բռնել»:

Փոքր տարիքում բռնված ֆենեկը հեշտությամբ ընտանի է դառնում և շնիկի պես վազվզում է տիրոջ ետևից:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*